Յ. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ
ԿՐԹԱԿԱՆ ՏԵՍՈՒՉ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԱՑ Կ. ՊՈԼՍՈՅ

# ԱՐՈՒԵՍՏ
# ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ
ԵՒ
# ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

## ՊԱՐԶ ԵՒ ԴԻՒՐԻՆ

ՊԱՐԶ ՏՈՒՄԱՐ ԵՒ ԿՐԿՆԱՏՈՒՄԱՐ

Ի ՊԷՏՍ
ՎԱՐԺԱՐԱՆԱՑԻՒ ԻՆՔՆԸՆՏԵԼ ՈՒՍԱՆՈՂԱՑ

معارف نظارت جلیله‌سنك ۳۹۹ نومرولی و ۱٦ اغستوس
سنه ۳۱۰ تاریخلی رخصتنامه‌سیله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Վ. ՄԻՆԱՍԵԱՆ
1899

Յ. Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ

# ԱՐՈՒԵՍՏ
# ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ

ԵՒ



## ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

[illegible]

## ՊԱՐԶԱՏՈՒՄԱՐ ԵՒ ԿՐԿՆԱՏՈՒՄԱՐ

Ի ՊԷՏՍ

ՎԱՐԺԱՐԱՆԱՑ ԵՒ ԻՆՔՆԸՆՏԵԼ ՈՒՍԱՆՈՂԱՑ

معارف نظارت جليلهسنك ٣٩٩ نومرولى و ١٦ اغستوس سنه ٣١٠ تاريخلى
رخصتنامهسيله طبع اولنمشدر

Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Յ. ԱՍԱՏՈՒՐԵԱՆ (ՀԱՅ ԳՐՇՐՑ. ԸՆԿ)

—1895—

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Վաճառականի մը գործոց յաջողութեան էական պայմաններէն մին ալ կը կայանայ անոնց ընթացքին վրայ ամենախիստ հսկողութեան մը մէջ։ Որ եւ է ձեռնարկութեան մը գլուխ գտնուող անձը պարտի շարունակաբար տեղեակ ըլլալ գործոց վիճակին, գիտնալ իւր պահանջից եւ պարտուց քանակութիւնը, շահը եւ վնասը, եւ վերջապէս իւր գոյքերուն քանակութիւնը եւ ընդհանուր արժէքը։ Վաճառականը պարտի միշտ ուշադիր ըլլալ գիտնալու թէ, իւր առեւտուրին ճիւղերէն որո՛նք աւելի շահաբեր են եւ որո՛նք վնասաբեր են կամ անօգուտ, որպէս զի գիտնայ նպաստաւոր ընթացքի մէջ դնելու գործերն եւ զգուշանալու ձախող գործառնութիւններէ, վերջապէս գիտակցաբար գործէ եւ ո՛չ յախուռն եւ անխոհեմ կերպիւ։

Վաճառականը այդ ուշադրութիւնը, այդ հսկողութիւնը ուրիշ միջոցաւ կարող չէ ի գործ դնել, բայց եթէ կանոնաւոր տոմարակալութեամբ մը։

Տոմարակալութիւնը կը ծառայէ՝ ընդունուած օրէնքներու համաձայն, տետրակներու մէջ, կանոնաւորապէս եւ ճշգրիտ կերպով արձանագրելու բոլոր դործողութիւնները, որոնք կը կատարուին վաճառականութեան, արուեստագիտութեան եւ շահագործական մեծամեծ ձեռնարկութեանց մէջ։

Նոր գիտութիւն մը չէ այս. այնչափ հին է որչափ վաճառականութիւնը. կարեւորութիւնն զգացուած է մանաւանդ այն ժամանակ երբ սկսուած է ապառիկ առուծախին։ Ի ըսկզբան, գիրերու գիւտէն առաջ, ապառիկ վաճառումները եւ պայմանադրութիւնները տեղի կ'ունենային մի միայն բերանացի բանակցութեամբ, ի ներկայութեան մի քանի անձանց որոնք իբր վկայ կը ծառայէին. որոշուած գիները փայտի կտորի մը վրայ գծերով կը նշանակուէին, այնպէս ինչպէս ցարդ կ'ընեն մեր հացավաճառք։ Գիրերու գիւտէն յետոյ ըս-

կըսաւ բուն տոմարականութիւնը. տետրակի մը մէջ՝ առանց որ եւ է կանոնի՝ կը գրէին կատարուած գործողութիւնները. տոմարականութի՛ւն որ պարզ ծանօթութիւններէ կը բաղկանար եւ որ անկից ի վեր հետզհետէ կատարելագործուեցաւ։ Հնդկաստանի Բանիանք անյիշատակելի ժամանակաց մէջ արդէն ծանօթ էին տոմարականութեան։ Հռովմայեցիք եւս ունէին զայն, զոր աւանդեցին եւրոպական ուրիշ ժողովրդոց։

Արդի կատարելագործեալ տոմարականութեան անհրաժեշտ պէտքը տարիներէ ի վեր զգացուած եւ ըմբռնուած է։ Մեր մէջ ալ երեւան ելած են հեղինակներ որոնք փափագած եւ աշխատած են այս օգտակար գիտութիւնն ընդհանրացնելու, եւ իրենց աշխատասիրութիւնք բաւական լաւ ծառայութիւններ մատուցած են։ Միայն թէ, ըստ որում այդ հեղինակներ վաճառականական եւ տոմարագիտական ամէն տեսակ գիտելիք իրենց այդ աշխատասիրութեանց մէջ խառն ի խուռն, առանց մեթոտի, զետեղած եւ ուսումը դժուարացուցած էին, տարիներէ ի վեր զգալի եղած էր ամփոփ, յստակ, պարզ եւ մեթոտիկ կերպով պատրաստուած Տոմարականութեան դասագրքի մը պէտքը, որ ծառայէ ո՛չ միայն վարժարանաց մէջ դասաւանդութեան, այլ նաեւ ինքնընտել ուսանողներու։

Կուզանք լնուլ այս պէտքը։ Գործին սկիզբն կարեւոր համարեցինք աւելցնել Վաճառականական Գիտելեաց մաս մը զոր գրեթէ ամբողջութեամբ առինք Ֆրանսական ընտիր դասագրքէ մը։ Իսկ բուն Տոմարականութեան համար մեզ խորհրդակից ունեցանք, նոյն դասագրքէն ի զատ, ուրիշ կարեւոր հեղինակներ եւս, որոնցմէ օգտուեցանք միայն, առանց հետեւելու սակայն անոնցմէ եւ ոչ մէկուն դասակարգութեան՝ զոր անբնական գտանք եւ ուսումը դժուարացնելու գլխաւոր պատճառ։ Մեր ընտրած դասակարգութիւնը ծառայած է շատ աւելի դիւրըմբռնելի ընելու զայս ուսումն, ինչպէս փորձով պիտի տեսնեն ուսուցիչք եւ ուսանողք։

Մեր նոր սերնդեան կը նուիրենք նաեւ մեր այս դուզնաքեայ աշխատութիւնը, որ կը պատկանի նոյնքան մանկավարժական որքան վաճառականական գրականութեան։

# ԱՐՈՒԵՍՏ

# ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ

ԵՒ

# ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

---

## ՎԱՃԱՌԱԿԱՆՔ և ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՔ

1. *Վաճառական կը կոչուին այն անձինք որոնք վաճառականական գործողութիւններով կ'զբաղին՝ իբրեւ արհեստ։*

2. *Վաճառականական գործողութիւններն անոնք են զորս վաճառականք կը կատարեն՝ անոնցմէ շահ մը գոյացնելու նպատակաւ։*

*Ապրանքներ գնել՝ յետոյ զանոնք ծախելու համար, թէ՛ իրենց բնական վիճակին մէջ եւ թէ՛ աշխատութիւնով զանոնք ձեւափոխելէ վերջ, եւ կամ պարզապէս զանոնք վարձու տալու համար, ասոնք վաճառականական կամ առեւտրական սովորական գործողութիւններ են։*

3. *Այս կարգի առեւտրական գործերով պարապող վաճառականք զանազան անուններով կը կոչուին։*

Ա. *Գործարանատէրք* (fabricants), *որք իրենց գնած նիւթերը կը ձեւափոխեն եւ իրենց կարգին կը ծախեն. ասոնք են ասուիի, թղթի, աճառի, ճենապակւոյ գործարանատէրք, եւայլն։*

Բ. *Բուն վաճառականք* (commerçants, négociants), *որք մեծաքանակ կը գնեն ու կը ծախեն ուտեստ, այսինքն մարդոց եւ անասնոց սննդեան յատկացեալ արտադրութիւններ, ինչպէս են ցորենահատիկները, ալիւրները, պտուղ, գինի, իւղ, սուրճ, եւայլն, եւ կամ մարդոց ուրիշ պէտքերուն յատկացեալ ապրանքները՝ որոնք աւելի կամ նուազ գործա-*

ծութեամբ կը մաշին, ինչպէս են մետաքսեղէնք, ասուեղէնք, մուշտակները, կարասեաց վերաբերեալ նիւթեր, մետաղներ, եւայլն։

Գ. Երկրորդ կարգի վաճառականք (marchands), որք մեծաքանակ (en gros) ապրանք կը գնեն եւ կը ծախեն փոքրաքանակ (en détail):

Դ. Մանրավաճառք (détaillants), որք իրենց ապրանքը երկրորդ կարգի վաճառականներէն կը գնեն եւ աւելի փոքր քանակով կը ծախեն։

Ե. Վաճառականաց կարգը կը դասուին նաեւ յանձնակատարք, ծովու կամ ցամաքի ճամբով փոխադրութեան գործով զբաղողք, հայթայթիչք. շինութեանց եւ սեղանաւորական գործողութեանց ձեռնարկուք, ապահովագրիչք, եւայլն։

4. Յանձնակատարները (commissionnaires) վաճառականներ են որ ուրիշի հաշուոյն կը գնեն ու կը ծախեն, փոխարէն վարձք մը ստանալով։

5. Միջնորդները (courtiers)՝ ծախողները եւ գնողներն իրարու հետ յարաբերութեան մէջ դնողներն են. ասոնք՝ այս ծառայութեան համար՝ հարիւրին այսչափ վարձք մը կ'առնեն, որ կը կոչուի միջնորդչէք։

6. Ձեռնարկուք (entrepreneurs) անոնք են որոնք յանձն կ'առնուն ուրիշի հաշուոյն, Պետութեան կամ մասնաւորաց համար, կատարել ամէն տեսակ շինութիւն, ինչպէս տուն, ճամբաներ, երկաթուղիներ, եւայլն։

..........................

## ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԹՂԹԵՐ

7. Դրամներ կամ ոսկւոյ եւ արծաթի ձոյլեր փոխադրելու դժուարութիւնք ծնունդ տուած են առեւտրական թղթերու, որոց անգոյ եւ պայմանադրական արժէքը ծառայած է տարօրինակ կերպով դիւրացնելու վաճառականական գործառնութիւնները։

8. Գլխաւոր առեւտրական թղթերն են.

*Փոխանակագիր* (lettre de change, traite),

*Հրամանի մուրհակ* (billet à ordre).

*Վճարագիր* (chèque)։

9. ՓՈԽԱՆԱԿԱԳԻՐ. — *Ահա՛ փոխանակագրոյ սովորական ձեւերէն մին.*

*Կ. Պոլիս 5 մայիս*, 1894 *Օսմ. ոսկի* 10

*Յառաջիկայ յունիսի* 15*ին, հաճեցէք վճարել Կ. Գափամաճեան էֆէնտիի կամ իւր հրամանին տասն Օսմ. ոսկւոյ գումարը. արժէքն ստացած եմ ապրանքով։*

Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ

*Առ Պ. Անդրանիկ Ասատուրեան*
*Վաճառական ի Տրապիզոն*

Constantinople, le 5 Mai 1894

(1)B. P. Livres turques 10.

Au quinze juin prochain, il vous plaira payer à Mr. G. Kapamadjian ou à son ordre, la somme de *dix livres turques*, valeur reçue en marchandises.

A. KRIKORIAN

A Mr. Antranik Assadourian
Négociant à Trébizonde

*Ահաւասիկ կատարուած գործողութիւնը.*

*Ա. Գրիգորեան յանձն առած է՝* 10 *Օսմ. ոսկւոյ գումարը Տրապիզոնի մէջ Կարապետ էֆ. Գափամաճեանի վճարուիլը, փոխարէն գումար մը ընդունելով կամ կանխաւ ընդունած գումարի մը փոխարէն, կամ փոխարէն ապրանք առնելով կամ կանխաւ առնուած ապրանքի փոխարէն։*

*Այսպէս՝ փոխանակութիւն տեղի կ'ունենայ, տեղւոյ փոխանակութիւն, քանի որ Պոլսոյ մէջ ընդունուած գումարին կամ ապրանքին փոխարէնը պիտի վճարուի ի Տրապիզոն։ Ասկէ յառաջ եկած է փոխանակագիր անունը։*

(1) Կը *կարդացուի* Bon Pour։

10. Ա. Գրիգորեան հրամանն կուտայ Ա. Աստուրեանի՝ նոյն գումարը վճարելու Կ. Գափամաճեանի։ Եթէ այս վերջինը չը կրնար կամ չուզեր ինքը գանձել այդ գումարը, հրամանն կ'ընէ Ա. Աստուրեանի՝ ուրիշի մը կամ անոր հրամանին համեմատ վճարելու։ Ուրեմն փոխանակագրին ետեւի կողմը պիտի գրէ սա բառերը. «Վճարեցէք Գ. Շմաւոնի հրամանին»։ Այս բառերուն տակ թուական պիտի դնէ եւ պիտի ստորագրէ։ Այս գործողութիւնը կը կոչուի փոխանցութիւն (endossement):

11. Այս փոխանցութիւնը կատարողը կը կոչուի փոխանցող (endosseur)։ Գումարը կարենալ գանձելու համար, պէտք է տէր ըլլալ փոխանակագրին. ուրեմն փոխանցութիւնը կը ծառայէ փոխանակագրի մը սեպհականութիւնը անձէ մը ուրիշ անձի մը անցունելու։

12. Նա որ փոխանակագիրը կը յօրինէ, նա որ վճարելու առաջին հրամանը կուտայ, նա զոր Ա. Գրիգորեան կոչեցինք, փոխանակագիրը քաշողն (tireur) է. կը քաշէ ուրիշի մը քսակին վրայ։

13. Նա (Գափամաճեան) որ փոխանակագիրը քաշողին ձեռքէն կ'ընդունի, առնողն (preneur) է։

14. Նա որ, պայմանաժամուն (échéance), փոխանակագիրը կը ներկայացնէ գումարն ստանալու համար, կրողը կամ ներկայացնողն (porteur) է։ Եթէ փոխանցութիւն տեղի չէ ունեցած, առնողն եւ ներկայացնողը նոյն միակ անձն է։

15. Նա որ վճարելու հրամանը կ'ստանայ, կը կոչուի վճարող (le tiré)։

16. Որովհետեւ փոխանակագիրն ի սկզբան քաշողին եւ առնողին միջեւ կը յօրինուի, միայն այս երկուքին միջեւ կայացած է բուն յանձնառութիւնը։ Ա. Գրիգորեան յանձն կ'առնու որ Աստուրեան վճարէ։ Այս վերջինը որ եւ է յանձնառութիւն չունի Կ. Գափամաճեանի նկատմամբ։ Վճարելու կոչուողը կրնայ, արդարեւ, բան մը չը պարտիլ եւ պարտաւոր չըլլալ վճարելու այն գումարը որուն համար Ա. Գրիգորեանէն հրաման կ'ստանայ վճարելու։

Նոյնպէս, երբ Գափամաճեան ուրիշի մը պիտի փոխանցէ նոյն փոխանակագիրը, ինքն եւս յանձն պիտի առնէ վըճարել տալ, եւ ինքն եւս նոյնպէս յանձն պիտի առնէ այն պարտապանութիւնն զոր իրեն նկատմամբ առած է Ա. Գրիգորեան։ Այսպէս է բոլոր յաջորդական փոխանցողներու համար։ Ասկէ կը հետեւի որ ներկայացնողն, ունենալով այսպէս երաշխաւորութիւնն բոլոր անոնց որոնք փոխանակագրին ետեւի կողմը ստորագրած են, կրնայ՝ եթէ վճարելու հրամայուողը չը կատարէ իրեն եղած հրամանը՝ դիմել անոնցմէ ո՛րին որ ուզէ, գումարն ստանալու համար, եւ եթէ մին ամբողջ գումարը չը վճարէ, կրնայ միւսներուն դիմել։ Այսպէս ուրեմն բոլոր փոխանցողները համապարտ (solidaire), կամ պարտքին վճարմանը համար իրարու երաշխաւոր են։ Իւրաքանչիւր փոխանցող կրնայ դիմել բոլոր անոնց որոնք իրմէ առաջ ստորագրած են։

17. Որովհետեւ վճարելու հրամայուողը կրնար ստիպուած չըլլալ իրեն եղած վճարելու հրամանը կատարելու, նախ իրեն ընդունելութեանը կը ներկայացնեն փոխանակագիրը։ Եթէ ընդունի, տոմսակին վրայ ընդունուած բառը կը գրէ, թուական կը դնէ եւ կ՚ստորագրէ, եւ այն ատեն պարտաւորուած է վճարելու։

Եթէ չընդունի, ներկայացնողը այս մերժումը պաշտօնապէս հաստատել կուտայ թղթով (protêt) մը, եւ այն ատեն փոխանցողներն եւ քաշողը պարտին, երաշխաւորութեամբ մը, ապահովցնել թէ փոխանակագիրը պայմանաժամուն պիտի վճարուի։

Եթէ ընդունուած փոխանակագիրը պայմանաժամուն չը վճարուի, ներկայացնողը պաշտօնապէս կը հաստատէ չը վըճարուիլը՝ թղթով մը, որ տեղի կ՚ունենայ պայմանաժամուն յաջորդ օրը։

18. Կրնայ պատահիլ որ, հակառակ ընդունողին եւ քաշողին կրկին ապահովութեանց, փոխանակագրին տէրը բաւական ապահով չը համարի վճարումը։ Այն ատեն երրորդ անձի մ՚երաշխաւորութիւնը (aval) կը պահանջէ, եւ երաշխաւորող անձը տոմսակին տակ «վաւեր երաշխաւորութեան»

(pour aval) կը գրէ եւ կ'ստորագրէ։ Այս անձ այն վայրկեանէն քաշողին եւ վճարելու հրամայուողին պէս պատասխանատու է։

19. Վաճառականը պարտի զգուշանալ բողոքոյ ենթակայ ըլլալէ. այս գործողութիւն իւր հատուցանելու կարողութեան վրայ կասկած յարուցանելով, կը կոտրէ իւր վարկը։

Եթէ քաշողը չուզեր որ, փոխանակագիրն անվճար մնացած պարագային, վճարելու հրամայուողը բողոքոյ ծախուց ենթակայ ըլլայ, իւր ստորագրութեան տակ «վերադարձ առանց ծախուց» խօսքը կը դնէ. սակայն կը նշանակէ որ, եթէ այն տոմսակը ներկայացուած ժամանակ չը վճարուի, կը փափաքի որ բողոք տեղի չունենայ, այլ պարզապէս իրեն վերադարձուի փոխանակագիրը։

Այս փոխանակագրին զանազան փոխանցողները պարտական են միեւնոյն յիշատակութիւնն ընելու իրենց ստորագրութեանց ներքեւ։

Փոխանակագիրը քաշողը կրնայ արդարութեան դիմել վճարելու հրամայուողին դէմ, եթէ սա անիրաւաբար մերժած է վճարումը, կա՛մ արժէքն արդէն ընդունած եւ կամ անոր հաւասար կամ աւելի գումար մը անոր (քաշողին) պարտական եղած ըլլալով։

20. Պայմանաժամն (échéance) այն օրն է ուր փոխանակագիրը պէտք է վճարուի։ Պայմանաժամը կրնայ որոշեալ օր մը ըլլալ, ինչպէս յունիս 15, սեպտեմբեր 30, հոկտեմբերի վերջ, ընթացիկ ամսոյ վերջ։ Կրնայ ըլլալ ի տես վճարելի, այսինքն այն օրն իսկ յորում կը ներկայացուի վճարելու հրամայուողին։ Կրնայ ըլլալ նաեւ տեսնուելէն այսչափ օր յետոյ վճարելի. օրինակի համար 3 օր, 15 օր յետոյ, այսինքն ներկայացուելէն 3 օր, 15 օր յետոյ։ Վճարելու հրամայուողին ընդունելութիւնը կամ մերժման պարագային եղած բողոքը կ'որոշեն թէ ո՛ր օր ներկայացուեցաւ տոմսակը, եւ, հետեւաբար, ո՛ր օրէն կ'սկսի 3 օրուան կամ 15 օրուան պայմանաժամը։ Պայմանաժամը կրնայ սահմանուիլ նաեւ մէկ ամիս, երկու ամիս, եւայլն, ժամանակամիջոցով, փոխանակագրին գրուած օրէն սկսելով։

21. Երբ պայմանաժամուն հանդիպած օրը կիւրակէ կամ տօնական օր մ'է, ներկայացնողը կրնայ օր մ'առաջ պահանջել վճարումը։ Այսպէս, եթէ պայմանաժամը յունիս 15ին կը լրանայ եւ այդ օրն ալ կիւրակի է, վճարումը պիտի պահանջուի յունիս 14ին, բայց բողոքը յունիս 16 երկուշաբթի օր միայն կրնայ տեղի ունենալ։

22. Վաճառականական գործողութիւն մ'ըրած կ'ըլլայ մէկը, եթէ միայն մասնակցի փոխանակագրի մը յօրինման կամ փոխանցման։

23. Օրէնքը կը թոյլատրէ վաճառականաց՝ փոխանակագիր մը քաշելու երկու կամ աւելի թուով օրինակ։

Այսպէս կ'ընեն, երբ փոխանակագիրը քաշուած է հեռու տեղէ մը, եւ կը վախցուի որ մի գուցէ ճամբան կորսըուած ըլլայ։

Այս պարագային մէջ, առաջին փոխանակագիրը կը գըրուի այսպէս.

«Հաճեցէք վճարել այս առաջին փոխանակագրով (երկրորդը ոչ գոլով)....։»

Երկրորդ փոխանակագիրն ընդհակառակը կը գրուի այսպէս.

«Հաճեցէք վճարել այս երկրորդ փոխանակագրով (առաջինը ոչ գոլով)....։»

24. Ամէն փոխանակագրի մէջ պէտք է նշանակուած ըլլայ թէ ի՛նչ բանի փոխարէն գրուեցաւ այն. ուստի պէտք է վերջանայ սա բառերով. արժէքն առնուած է ապրանքով, արժէքն առնուած է դրամով, արժէքն ի հաշիւ։

## ՓՈԽԱՆԱԿԱԳՐՈՑ ԶԱՆԱԶԱՆ ՕՐԻՆԱԿՆԵՐ

Կ. Պոլիս. 1 մարտ 1895 Օսմ. ոսկի 30

Տեսօրին, հաճեցէք Կ. Գափամաճեան էֆէնտիի կամ իւր հրամանին վճարել երեսունն Օսմ. ոսկւոյ գումարը․ արժէքն ստացայ դրամով։

Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ

Առ Պ. Անդրանիկ Ասատուրեան
Վաճառական ի Տրապիզոն

Constantinople, le 1er Mars 1894

B P. Liv. T.30

A vue, il vous plaira payer à Mr. G. Kapamadjian ou à son ordre la somme de *trente livres turques*, valeur reçue en espèces.

A. KRIKORIAN

A M. Antranik Assadourian
Négociant à Trébizonde

''''''''''''''''''''''''

*Կ. Պոլիս, 1 մարտ 1894* — *Օսմ. ոսկի* 30

*Ի տես, հաճեցէք Կ. Գափամաճեան էֆէնտիի կամ իւր հրամանին վճարել երեսուն Օսմ. ոսկւոյ գումարը. արժէքն ստացայ դրամով ըստ ծանուցման։*

Ա. ԳՐԻԳՈՐԵԱՆ

*Առ Պ. Անդրանիկ Ասատուրեան*
*Վաճառական 'ի Տրապիզոն*

Constantinople, le 1 Mars 1894

B. P. Liv. T. 30

A présentation, veuillez payer à Mr. G. Kapamadjian, ou à son ordre, la somme de *trente livres turques*, valeur reçue en espèces suivant avis.

A. KRIKORIAN

A Mr. Antranik Assadourian
Négociant à Trébizonde

''''''''''''''''''''''''

*Կ. Պոլիս, 1 մարտ 1894* — *Օսմ. ոսկի* 30

*Ցառաջիկայ մայիս ամսոյ վախճանին, հաճեցէք վճարել այս առաջին փոխանակագրով (երկրորդը ոչ գոլով), Պր. Ն. Բափայէլեանի հրամանին, երեսուն Օսմ. ոսկւոյ գումարը. արժէքն ի հաշիւ։*

Ա. ՀԱՄԲԱՐԳԱԲԹԱՆ

*Առ Պր. Կ. Լաթիֆեան*
*Վաճառական ի Տրապիզոն*

Conspie, le 1 mars 1894

B. P. Liv.T. 30

Fin mai prochain, veuillez payer par cette première de change

(la seconde ne l'étant), à l'ordre de Mr. N. Raphaélian, la somme de trente livres turques, valeur en compte.

A Mr. G. Latifian — A. HAMPARKAPTAN
Négociant à Trébizonde

""""""""""""""""""""""""

Կ. Պոլիս, 1 մարտ 1894 — Օսմ. ոսկի 30

Տեսօրէն երեսուն օր յետոյ, այս երկրորդ փոխանակագրով (առաջինը ոչ գոլով) վճարեցէք, Պր. Ե. Անդրէասեանի հրամանին, երեսուն Օսմ. ոսկւոյ գումարը, եւ անցուցէք ի հաշիւ առանց ուրիշ ծանուցման։

Գ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

Առ Պր. Զ. Սերովբեան
Վաճառական յԷտիրնէ

Ընդունուած.
Զ. ՍԵՐՈՎԲԵԱՆ

Consple, le 1er mars 1894 — B. P. Liv. T. 30

A trente jours de vue, payez par cette deuxième de change (la première ne l'étant), à l'ordre de Mr. E. Antréassian, la somme de trente livres turques, valeur en compte, que passerez sans autre avis.

K. GARABÉDIAN

A. Mr. Z. Sérovpian
Négociant à Andrinople

Accepté
Z. SÉROPIAN

""""""""""""""""""""""""

25. Փոխանակագիրները կը գրուին սովորաբար իբր 25 սանթիմէթր երկայնութեամբ եւ իբր 10 սանթիմէթր լայնութեամբ թուղթերու վրայ։ Սովորաբար կը գործածուին տպեալ փոխանակագրեր. շատ վաճառականք յատուկ իրենց անուամբ փոխանակագրեր տպել կուտան։

26. Բոլոր առեւտրական թուղթերը ենթակայ են դրոշմաթուղթի տրոց, եւ այս տուրքը համեմատական է արժեթըղթին վրայ նշանակուած գումարին։

Այս տուրքերն են.

100 էն 1000 դրուշի գումարներուն համար՝ 20 փարա։

1000 էն 2000 դրուշի գումարներուն համար՝ 1 դրուշ։

2000էն մինչեւ 10,000 դրուշի գումարներուն համար, իւրաքանչիւր 2000 դրուշի կամ 2000 դրուշի կոտորակին փոխարէն՝ 1 դրշ։

10,000 էն 100,000 դրշ.ի գումարներու համար, իւրաքանչիւր 5000 դրշ.ի կամ 5000 դրուշի կոտորակին փոխարէն՝ 2 1/2 դրշ։

100,000 դրուշէն աւելի գումարներու համար, իւրաքանչիւր 10,000 դրուշի կամ անոր կոտորակին փոխարէն՝ 5 դրուշ։

27. Փոխանակագրին վերջին տէրը, այսինքն նա որ զայն վճարելու հրամայողին պիտի ներկայացնէ, այս վերջնոյն կուտայ զայն պայմանաժամուն օրը, ստանալով նոյն տոմսակին մէջ նշանակուած գումարը, եւ անոր վրայ «ստացայ» բառը գրելով եւ ստորագրելով։

28. Փոխանակագրի ուրիշ տեսակ մը (traite) կայ որով վաճառական մը իւր պարտատէրէն կը խնդրէ՝ որոշուած թուականի մը՝ նշանակուած երրորդ անձի մը կամ անոր հրամանին վճարելու յիշուած գումարը։

Օրինակ. Յովհաննէս Իփլիքճեան՝ Զմիւռնիացի Տիրան Գասպարեանի ծախած է Պրուսայի խավլուներ, որոց արժէքը պիտի վճարուի յառաջիկայ դեկտեմբերի 31ին։

Դրոշմուած թուղթի մը վրայ կը գրէ.

«Կ. Պոլիս, 25 Հոկտեմբեր 1893 Օսմ. ոսկի 56

Յառաջիկայ դեկտեմբերի երեսուն եւ մէկին, հաճեցէք վճարել, Մ. Վարպետեանի հրամանին, յիսուն եւ վեց Օսմ. ոսկւոյ գումարը. արժէքն ստացած էք ապրանքով, եւ անցուցէք ի հաշիւ ըստ ներկայ ամսոյ 2ի ծանուցմանս։

Յ. ԻՓԼԻՔՃԵԱՆ

Առ Պր. Տիրան Գասպարեան

Վաճառական ի Զմիւռնիա

Consple, le 25 octobre 1893 B. P. Liv. T.56

Au trente et un décembre prochain, veuillez payer contre ce mandat, à l'ordre de Mr. M. Varbedian, la somme de *livres turques cinquant six,* valeur reçue en marchandises que passerez suivant mon avis du 2 courant.

A Mr. Diran Kasbarian H. IPLIKDJIAN
Négociant à Smyrne

*Այս օրինակէն կ'երեւի թէ վերը յիշուած փոխանակագիրներուն եւ այս տեսակ փոխանակագրին միջեւ էական տարբերութիւն մը չը կայ բնաւ։*

*Ինչ որ ըսուեցաւ վերեւ յիշուած փոխանակագրոց պայմանաժամուն, բողոքոյ եւ փոխանցողներու երաշխաւորութեան մասին, պէտք է իմանալ նաեւ այս կարգի փոխանակագիրներու համար։*

29. ՀՐԱՄԱՆԻ ՄՈՒՐՀԱԿ — *Հրամանի մուրհակը առեւտրական թուղթ մ'է որով պարտական մը յանձն կ'առնու, որոշեալ պայմանաժամու մը վճարել պարտապահանջի մը կամ իւր հրամանին, նոյնինքն նշանակուած անձի մը, պարտական եղած եւ գրերով նշանակուած գումար մը։*

*Օրինակ. Կարապետ Տանակէօզեան Խաչիկ Յարութիւնեանէն տակառ մը գինի գնած ըլլալով 200 Ֆրանքի, յանձն կ'առնու այս գումարը վճարել յառաջիկայ յունվարի 31ին։ Իւր պարտքը ճանչնալու համար, դրոշմուած թուղթի մը վրայ կը դրէ.*

*Կ. Պոլիս, 1 Հոկտեմբեր* 1893 *Ֆրանք* 200

*Յառաջիկայ յունուարի երեսուն եւ մէկին, Խաչիկ Յարութիւննեանի կամ իւր հրամանին պիտի վճարեմ երկու հարիւր ֆրանքի գումարը. արժէքն ստացած եմ ապրանքով։*

Կ. ՏԱՆԱԿԷՕԶԵԱՆ

*Կ. Պոլիս, Պահչէ-գաբու*
*Թաշ խան, Թիւ* 10

Consple, le 1er octobre 1873 B. P. Fr.200

Au trente et un janvier prochain, je payerai à M. Khatcik Haroutiounian ou à son ordre, la somme de *deux cents francs,* valeur reçue en marchandises.

Consple, Bahtché Kapou G. DANAGUÉOZIAN
Tash Han, 10

Ինչ որ ի վերեւ ըսուեցաւ փոխանակագիրներու համար, պէտք է իմանալ նաեւ հրամանի մուրհակներու համար։

Հրամանի մուրհակը կը տարբերի սակայն փոխանակագրէն՝ շատ հանգամանքներով.

1° Հրամանի մուրհակի մը մէջ, միայն պարտապան մը եւ պարտապահանջ մը կայ, մինչդեռ՝ փոխանակագրին մէջ՝ երեք անձանց գործակցութիւնը կայ։

2° Հրամանի մուրհակը կրնայ վճարելի ըլլալ այն տեղւոյն մէջ իսկ ուր ստորագրուեցաւ։ Փոխանակագիրն երբեք չը կրնար ըլլալ այսպէս։

3° Փոխանակագիրն էապէս վաճառականական գործողութիւն մ'է։ Հրամանի մուրհակը՝ ոչ-վաճառականական գործողութեան մ'արդիւնքը կրնայ ըլլալ։

4° Փոխանակագրէն ծնունդ առած օրինական պահանջումները կրնան տեղի ունենալ միայն մինչեւ հինգ տարի։ Հրամանի մուրհակներէն ծնունդ առած օրինական պահանջումները այն ժամանակ միայն հինգ տարուան մէջ տեղի կրնան ունենալ՝ երբ գործողութիւնը վաճառականական է. հակառակ պարագայի մէջ՝ օրինական պահանջմանց ժամանակամիջոցն է 15 տարի։

30. ՎՃԱՐԱԳԻՐ. — Վճարագիրը տոմսակ մ'է որով թղթակից մը կամ սեղանաւոր մը կը հրաւիրուի ձեռքէ հանելու, յօգուտ տոմսակը ներկայացնողին կամ նշանակուած անձի մը, գումար մը որ իւր քով տրամադրելի մնացած էր ի հաշիւ տոմսակը քաշողին։

Վճարագիրն ի տես միայն կրնայ քաշուիլ։ Պէտք է ստորագրուած ըլլայ եւ գրերով կրէ քաշուած օրուան թուականը։ Կրնայ հրամանի ալ գրուիլ եւ փոխանցուիլ։ Կրնայ քաշուիլ տեղէ մ'ուրիշ տեղ, կամ միեւնոյն տեղւոյն մէջ։ Առաջին պարագային, վճարումը պէտք է պահանջուի ութ օրուան մէջ, եւ երկրորդ պարագային, հինգ օրուան մէջ։

Վճարագիրը կը մասնաւորուի իւր սա հանգամանքով որ չը կրնար քաշուիլ բայց եթէ երրորդ անձի մը վրայ որ կանխաւ ընդունած է նոյնքան գումար մը կամ տոմսակը քաշողին նոյնքան պարտք ունի։

Վճարագրին թուականը պէտք է գրերով գրուի եւ ոչ թուանշանով։

ՕՐԻՆԱԿ ՎՃԱՐԱԳՐԻ.

Ն° 2015 Ֆր. 2150

Բարիզ, տասնեւհինգ հոկտ. 1893

Քրէտի Լիոնէ Պանքա ի Բարիզ

Տեսօրին, վճարեցէք տոմսակաբերիս կամ Պ... ի հրամանին, երկու հազար հարիւր յիսուն ֆրանքի գումարը։

Վճարելի Քրէտի Լիոնէէն ի...

ՏՆՕՐԷՆ

## ՍՆԱՆԿՈՒԹԻՒՆ

31. Երբ վաճառական մը կը դադրեցունէ վճարումները, իր այս վիճակը կը կոչուի սնանկութիւն (faillite)։

Վճարումները դադրեցնող վաճառականը պարտի իր այս վիճակն երեք օրուան մէջ ծանուցանել առեւտրական դատարանին, կամ, եթէ առեւտրական դատարան չկայ, նախագահ ատենին. հակառակ պարագայի մէջ օրինաց տրամադրութիւնք իր վրայ ի գործ կը դրուին իբրեւ սեղանաբեկի (banqueroutier) վրայ (տես թիւ 36)։ Միեւնոյն ժամանակ կը ներկայացնէ իր հաշուեկշիռն, այսինքն իր ստացուածոց եւ իր պարտուց վիճակը, զէն ու շահերու ցուցակը, ինչպէս եւ իր անձնական ծախքերուն ցուցակը։ Կը հաստատէ այս հաշուեկշռոյն անկեղծութիւնը, թուական կը դնէ եւ կ'ստորագրէ։

32. Առեւտրական դատարանը, կամ քաղաքային դատարանը, առեւտրական օրինօք դատելով, վճիռ մը կուտայ որով սնանկութիւնը կը հռչակէ։ Այն ատեն սնանկը կը դադրի ինք կառավարելէ իր ստացուածքն, եւ դատարանին կողմանէ այս գործը կը յանձնուի երկու մարդոց որոնք կը կոչուին Սնանկութեան Հոգաբարձուներ (syndic)։ Հոգաբարձուները ենթակայ են առեւտրական դատարանին մէկ անդամին հսկողութեան, որ այս պաշտօնին համար կ'որոշուի

յատկապէս եւ կը կոչուի Յանձնառու կամ Տեղեկատու-դատաւոր (juge-commissaire) ։

33. Սնանկութեան հոգաբարձուք սնանկին առնելիքները կը գանձեն, ստացուածքը դրամի կը վերածեն եւ գոյացած գումարը պահանջատէրաց կը բաժնեն, իւրաքանչիւրին տալով իր պահանջքին համեմատական մաս մը, այսինքն իւրաքանչիւր պահանջատէր կ'ստանայ իրեն ինկած բաժինը (dividende)։

Այս բաշխման կարենալ մասնակցելու համար, պարտապահանջք պարտին Յանձնառու-Դատաւորին կանխաւ յանձնել իրենց ձեռք գտնուած պարտաթուղթերը, ճշդել տալ զայնս եւ ապացուցանել թէ այս պահանջք անկեղծ են եւ ճշմարիտ։

34. Պահանջատէրք, իրենց պահանջքը ճշդել տալէ եւ հաստատելէ յետոյ, կրնան սնանկը իր գործոց գլուխն անցունել, անոր հետ պայմանագրութիւն մը կնքելով որ կը կոչուի իրաւախոհութիւն (concordat)։ Ընդհանրապէս, պահանջատէրք կը զեղչեն սնանկին պարտուց մէկ մասը եւ մնացած գումարին վճարմանը համար որոշ պայմանաժամ մը կուտան անոր։

Իրաւախոհութիւն այն ատեն միայն կրնայ տեղի ունենալ, երբ պահանջատէրաց կէսէն մէկ աւելին հաւանին։ Ասկէ ի զատ, այս մեծամասնութիւնը կազմող պահանջատէրք պէտք է ներկայացնեն ճշդուած եւ հաստատուած պահանջից գումարին երեք չորրորդ մասը։

Վերջապէս, պահանջատէրաց եւ սնանկին միջեւ գոյացած իրաւախոհական պայմանագրութիւնն այն ատեն վերջնական կ'ըլլայ, երբ առեւտրական դատարանն ընդունի զայն եւ վաւերացնէ։ Դատարանին վաւերացումէն (homologation) յետոյ միայն սնանկը կրնայ իր գործոց վարչութիւնն ստանձնել վերստին։

35. Սնանկին վարկը կը վերահաստատի վճռաբեկ դատարանին որոշմամբ, երբ վճարէ իր բոլոր պարտքերը, դրամագլուխ, տոկոս, ծախք ի միասին։

Վերահաստատել իր վարկը, այս պէտք է ըլլայ միակ նպա-

տակն ամէն վաճառականի որ սնանկ հրատարակուելու դըժբաղդութիւնն ունեցաւ։ Ինչ որ ալ ըլլայ սնանկութեան պատճառը, անյաջողութիւն կամ անխոհեմութիւն, սնանկին վայելած առեւտրական համարումը ծանր հարուած ընդունած է, եւ բնաւ չը պարտի մոռնալ որ իւր պահանջատեարց պարտական մնացած է իւր չը վճարած գումարները։ Մինչեւ իսկ սնանկին որդիք, հոգածու պատուոյն իրենց հօրենական անուան, պարտաւորութիւն պէտք է զգան իրենց մեռած հօրը պարտքերը վճարելու եւ նորա յիշատակը պատկառելի ընծայելու։

36. Ամէն սնանկ վաճառական կրնայ օրինաց տրամադրութեան ենթակայ ըլլալ իբրեւ պարզ սեղանաբեկ, եթէ չունի վաճառականական տումարներ կամ եթէ իւր տումարները անկանոն կերպով բռնուած են, եթէ իւր ծախքերը չափազանց դատուին, եթէ յանդուգն ձեռնարկութեանց մէջ նետուած է, եւայլն. օրինաց տրամադրութեան կրնայ ենթակայ ըլլալ իբրեւ խարդախ սեղանաբեկ, եթէ իւր վաճառականական տումարներն անհետացնէ, եթէ ունեցածին մէկ մասը պահէ, եթէ խարդախ գործառնութիւններ ընէ։

37. Ըստ օրինի, սնանկութիւնը դժբաղդութիւն մ'է, պարզ սեղանաբեկութիւնը յանցանք մ'է, խարդախ սեղանաբեկութիւնը ոճիր մ'է։

38. Պարզ սեղանաբեկը կը բանտարկուի մէկ ամիսէն մինչեւ երկու տարի. խարդախ սեղանաբեկը կը պատժուի ժամանակաւոր տաժանակիր աշխատութեամբ։

## ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ՏՈՒՄԱՐՆԵՐ

39. Վաճառականական տումարներ կը կոչուին այն տետրակները որոց մէջ վաճառականք կ'արձանագրեն իրենց առեւտուրին վերաբերող ամէն գործողութիւն։

40. Պարտաւորիչ, այսինքն ամէն վաճառականի համար օրէնքով սահմանուած, տումարներն երեք են.

Ա. ՕՐՀԱՇԻՒ (Journal *կամ* Livre-journal).

Բ. ՆԱՄԱԿԱՑ ԸՆԴՕՐԻՆԱԿՈՒԹԻՒՆ (Copie de lettres).

Գ. ԿԱՀԱԳՐՈՑ ՏՈՒՄԱՐ (Livre d'inventaires).

41. ՕՐՀԱՇԻՒ*ը տումար մ'է որուն մէջ վաճառականը ամէն օր կ'արձանագրէ ըրած բոլոր գործողութիւնները, ինչ որ ալ ըլլան, անխտիր եւ առանց դասակարգութեան. վաճառումէ մը յետոյ կ'արձանագրուի՝ օրինակի համար՝ գնում մը, գանձումէ մը յետոյ վճարում մը, եւայլն։*

*Վաճառականը պարտաւորուած է այս տումարին մէջ միահամուռ արձանագրելու նաեւ, ամէն ամսոյ վերջ, իւր տան համար ըրած ծախքերուն գումարը։*

42. ՆԱՄԱԿԱՑ ԸՆԴՕՐԻՆԱԿՈՒԹԵԱՆ ՏՈՒՄԱՐ*ը տետրակ մ'է որուն մէջ վաճառականը կ'ընդօրինակէ իւր թղթակիցներուն ուղղած բոլոր նամակները։ Գալով ստացած նամակներուն, պարտաւոր է զանոնք ամէնքը ծրար ընել եւ պահել մինչեւ տասը տարի, ինչպէս իւր բոլոր միւս տումարները։*

43. *Վաճառականին համար պարտաւորիչ երրորդ տումարն է* ԿԱՀԱԳՐՈՑ ՏՈՒՄԱՐ*ը, որուն մէջ պարտի արձանագրել, գոնէ տարին մի անգամ, իւր կահագիրը, այսինքն երկու մասերէ բաղկացած մանրամասն ցուցակ մը, որ պիտի պարունակէ մէկ կողմէն բոլոր իւր ունեցածը կամ բոլոր իւր պահանջքը, եւ միւս կողմանէ՝ բոլոր իւր պարտքը։*

*Վաճառականը կրնայ այսպէս ամէն տարի խելամուտ ըլլալ իւր վիճակին, եւ հետեւաբար կանոնաւորել իւր ընթացքը։ Եթէ կահագիրը նախորդ տարւոյն վրայ առաւելութիւն մը երեւան հանէ, կը հասկնայ որ աղէկ ճամբու մէջ է եւ կը շարունակէ նոյն ճամբուն հետեւիլ։ Եթէ, ընդհակառակը, տեսնէ որ իւր պահանջից առաւելութիւնը իւր պարտուց վրայ՝ նուազած է, հարկ պիտի ըլլայ իրեն՝ նախազգուշութիւններ ընել ապագային համար։ Պէտք պիտի տեսնէ այն ատեն՝ նուազեցնելու ընդհանուր ծախքերը կամ անձնական ծախքերը։*

*Որպէս զի այս երեք տումարները վաճառականին պարկեշտութեանը եւ վաճառականական գործողութեանց ան-*

կեղծութեանը երաշխաւորութիւն մ'ըլլան, որպէս զի անհամաձայնութիւն կամ դատաստան տեղի ունեցած եւ գործին մէջ շահ ունեցողներու կողմանէ այդ տումարներն ի վկայութիւն կոչուած ժամանակ՝ այդ վկայութիւնը կշիռ ունենայ, օրէնքը պարտք համարած է մէկ քանի ձեւակերպութեանց ենթարկելու զայնս։

Այս տումարները պէտք է բռնուին թուականներու կարգով, առանց պարապ միջոց թողելու, առանց կարգն ընդհատելու, առանց շուանցքներուն մէջ փոխադրութիւններ ընելու։ Պէտք չէ որ պարունակեն ո՛չ քերթըուածքներ եւ ո՛չ համառօտագրութիւններ։ Սխալ մը ո՛ր օր որ նշմարուի, այն օրուան թուականաւ պէտք է ուղղել զայն։

Այս տումարները տակաւին գործածելու չսկսած, պէտք է թուագրել (coter) եւ վաւերացնել (viser) տալ զայնս, կա՛մ առեւտրական դատարանին մէկ անդամին եւ կա՛մ տեղւոյն քաղաքապետին։ Իւրաքանչիւր թերթի վրայ թիւ կը դրուի եւ գործողութիւնը կ'արձանագրուի տումարին սկիզբը կամ վերջը։

Այս վաւերացումը, որոյ փոխարէն որոշ տուրք մը կ'առնուի, նպատակ ունի արգիլելու տումարներու նենգումը, անկարելի ընելով մէջէն թերթ մը հանել եւ անոր տեղ ուրիշ մը դնել։

Այս վաւերացումէն ի զատ, օրէնքը կը տրամադրէ նաեւ որ Օրհաշիւը եւ Կանագրոց տումարը ամէն տարի պէտք է փակուին վերոյիշեալ պաշտօնէից կողմանէ։ Այս ձեւակերպութեան նպատակն է չը թողուլ որ կանխաւ վաւերացուած եւ սպիտակ թողուած տումարի մը մէջ շինծու բաներ գրուին ապագային մէջ։ Այս ձեւակերպութիւն անօգուտ երեւցած է Նամակաց Ընդօրինակութեան տումարին համար, որ միշտ կրնայ ճշգրտուիլ, իսկական նամակները մէջ տեղ հանուելով։

44. Պարտաւորիչ երեք տումարներէն զատ, վաճառականք ուրիշ տումարներ ալ, օժանդակ (auxiliaire) տումարներ, կը բռնեն։ Այս օժանդակ տումարներու օգտակարութիւնը խիստ մեծ է. անոնց գործածութեան մասին ալ պիտի խօսինք իրենց կարգին։

*կանոնաւորութեամբ բռնուած վաճառականական տումարները, մինչեւ իսկ այն տումարները որոց գործածութիւնն օրինօք չը պահանջուիր, կրնան „դատաւորաց առջեւ կամ վաճառականաց միջեւ, իբրեւ ապացոյց ծառայել վաճառականական գործողութեանց։ Կրնան մինչեւ իսկ, ատիճան մը, ի վկայութիւն կոչուիլ եւ իբրեւ ապացոյց ծառայել վաճառականաց եւ ոչ-վաճառականաց միջեւ։*

*Այն վաճառականը որ տումար չը բռներ կամ անկանոն կերպով կը բռնէ, եթէ անյաջողութեանց մատնուի եւ սնանկ հրատարակուի (Թիւ* 31), *ենթակայ է նկատուելու իբրեւ սնեղանաքեկ (Թիւ* 36)։

..........................

## ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԻՒՆ

**45.** *Տոմարակալութիւնը գիտութիւն մ'է որ նպատակ ունի մասնաւոր տումարներու մէջ մեթոտիկ կերպով արձանագրել վաճառատան մը զանազան գործողութիւնները, ինչպէս են գնմունք, վաճառմունք, հասոյթք, ծախք, եւայլն։*

*Տոմարակալութիւնը մասնաւորապէս՝ այս գործողութեանց յարմարցուած հաշուոյ գիտութիւնն է։*

*Տոմարակալութիւնն անհրաժեշտ է ամէն վաճառականի համար. բայց սխալ մ'է կարծելը թէ անօգուտ է այն՝ ոչ-վաճառական մասնաւոր անհատներու համար։ Եթէ ամէն մարդ չը ծախեր, ամէն մարդ կը գնէ. ամէն մարդ՝ առանց բացառութեան՝ դրամ կ'առնէ եւ կուտայ։ Ուրեմն ամէն անհատի համար կարեւոր է, —եթէ կ'ուզէ խելամուտ ըլլալ իւր հասութից գործածութեանը եւ իւր ծախքերը կարգաւորել իւր եկամուտներուն համեմատ—, որ գիտնայ իւր եկամուտն եւ իւր ծախքերն արձանագրել, հաշիւ բռնել, ի՛նչ տարրական ձեւի ներքեւ կ'ուզէ թող ըլլայ այդ հաշուեպահութիւնը։*

**46.** *Երկու տեսակ Տոմարակալութիւն կայ.* **ՊԱՐԶԱՑՈՒՄԱՐ** *եւ* **ԿՐԿՆԱՏՈՒՄԱՐ** *ըսուածները։*

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

47. Վաճառականական տումարի մը մէջ, անձ մը **պարտական** (débiteur) ըսել՝ կը նշանակէ արձանագրել թէ այդ անձը կը **պարտի**։

48. Անձ մը **պահանջող** (créancier, créditeur) ըսել՝ կը նշանակէ արձանագրել թէ անոր կը **պարտի** մէկը կամ կը **պարտին**։

49. Անձի մը հաշիւը երկու որոշ մասերէ բաղկացեալ ցուցակ մ՚է։ Մէկ մասին մէջ, որ տետրակին կամ թերթին ձախ կողմը կը դրուի, կը գրուին բոլոր այն գումարները զորս այս անձը կը պարտի. ասիկայ **Պարտքին** (débit) կողմն է. այս էջին վերեւը, ձախ կողմը, կը գրուի **Պարտի** (doit) բառը։ Միւս մասին մէջ, որ աջ կողմը կը դրուի, կ՚արձանագրուին բոլոր այն գումարները զորս այդ անձը կը պահանջէ. այս ալ **Պահանջքին** (crédit) կողմն է. այս էջին վերեւն ալ, աջ կողմը, կը գրուի **Պահանջէ** (avoir) բառը։

50. Հաշուոյ մը **Կշիռն** (solde) է այս հաշուոյն պարտքին եւ պահանջքին մէջ եղած տարբերութիւնը, կամ փոխադարձաբար։

Կշիռը **պարտական** է, եթէ պարտքը պահանջքէն աւելի է։

Կշիռը **պահանջող** է, եթէ պահանջքը պարտքէն աւելի է։

Հաշիւ մը **փակել** (solder)՝ կը նշանակէ այս հաշուոյն կշիռը որոշել. կը նշանակէ նաեւ վճարել զայն, եւ հետեւաբար վերջ տալ հաշուոյն։

51. Անձի մը **Գոյքը** (actif) կը կազմեն իր ստացուածքը եւ իր պահանջքները, առանց հաշուի առնելու իր պարտքերը։

52. Անձի մը **Պարտքը** (passif) կը կազմէ իր պարտական եղած գումարներուն ամբողջութիւնը։

53. Վաճառականի մը **Հաշուեկշիռն** (bilan) է իր նիւթական վիճակին, այսինքն իր գոյքերուն եւ իր պարտուց, համառօտ մէկ ցուցակը։

54. *Վաճառատան մը ընկերական անունը* (raison sociale) *կը կոչուի այն անունը որով իւր գործառնութիւնները կը կատարէ իւր թղթակցաց հետ։ Սովորաբար կը գործածուի ընկերակցի մը կամ երկու ընկերակցի անունը, որուն կը կցուի «Ընկ.» (Ընկերութիւն,* Cie) *բառը։*

## ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ՏՈՒՄԱՐԱՑ ՄԷՋ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ԳԼԽԱՒՈՐ ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՔ

| | |
|---|---|
| Ի/Հ . . . . . | Իւր հրամանին |
| Իմ/Հ . . . . . | Իմ » |
| Ընկ. . . . . . | Ընկերութիւն |
| Ղշ. . . . . . | Ղրուշ |
| Թ. . . . . . | Թիւ |
| Երտ. . . . . | Եարտա |
| Գ. . . . . . | Գին |
| Ծր. . . . . . | Ծրար |
| Տկ. . . . . . | Տակառ |
| Քիլ. . . . . | Քիլօկրամ |
| Ֆր. . . . . . | Ֆրանք |
| Ա. . . . . . | Առնելիք |
| Տ. . . . . . | Տալիք |
| Կպ. . . . . | Կապոց |
| Օ. . . . . . | Օխա |
| % . . . . . | Առ հարիւր |
| ‰ . . . . . | Առ հազար |
| Ինչ . . . . . | Ինչէզ (Անգլ. եարտային տասներորդականը. մէկ եարտա =36 ինչէզ) |
| Լիպ. . . . . . | Լիպրա (1 լիպրա=144 տրամ.)։ |

## ՊԱՐԶԱՏՈՒՄԱՐ

55. *Պարզատումար տոմարակալութեան համար կարեւոր են հետեւեալ տետրակները.*

1° *Օրհաշիւ*, ⎫
2° *Նամակաց ընդօրինակութիւն*, ⎬ *օրինաց պահանջուած.*
3° *Կանագրոց տումար*, ⎭
4° *Ձեռնատետր*,
5° *Մայր հաշիւ*,
6° *Սնտուկի տետր*,
7° *Տետր փոխանակագրոց*,
8° *Մթերատետր*։

## ՁԵՌԱՏԵՏՐ

56. *Ձեռնատետրը պարզ տետրակ մ'է, որուն մէջ վայրկենապէս առ ձեռն կ'արձանագրուի ամէն գործողութիւն, կատարուածին պէս, որպէս զի յետոյ անկէ առնուելով անցուի Օրհաշուոյն մէջ։*

*Ձեռնատետրն ըստ օրինի անհրաժեշտ չէ, բայց սա առաւելութիւնն ունի որ թոյլ կուտայ յարմար ժամանակ կանոնաւորապէս տետրակներն անցունել կատարուած գործողութիւնները։*

*Ձեռնատետրին ձախ կողմի նեղ սիւնակին մէջ դրուած թուանշանները կը յիշեցնեն Օրհաշուոյն այն երեսները ուր խնդիրները փոխադրուած են։*

### ՕՐԻՆԱԿ ՁԵՌԱՏԵՏՐԻ

| | | | |
|---|---|---|---|
| | — 1 *սեպտ.* 1893 — | | |
| 1 | *Հօրմէս ստացայ իբրեւ դրամագլուխ* 1000 *Օսմ. ոսկի*։ | 100,000 | 100,000 |
| | — *Նոյն* 2 — | | |
| | *Ստացայ Յ. Նշանեանէ, վաճա-* | | |
| | *Փոխադրելի* . . . . | | 100,000 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| | Փոխադրեալ | | | 100,000 |
| | ռական յէտիրնէ, 41 տակառ գինի, 210 ղրշ. էն . . . . . . | 8,610 | | |
| | Ճամբան պարպուած մասին համար զեղչ . . . . . . . . | | | |
| | (վճարագրով մը վճարելի, % 3) | 30 | | 8,580 |
| | 2 սեպտ. 1893 | | | |
| 1 | Ստացայ Մ. Անանեանէ, վաճառական ի Ռոտոսթօ, 9 տակառ քացախ, տակառը 125 ղրշ. . | 1,125 | | 1,125 |
| | (վճարելի Ռոտոսթոյի վրայ ի տես վճարագրով մը) | | | |
| | Նոյն 4 | | | |
| 1 | Սեղանաւոր Գէորգ էֆ. Սապօնճեանին ընթացիկ հաշուով տուի 400 ոսկի. . . . . . | 40,000 | | |
| | Մթերանոցիս 6 ամսուան վարձքը կանխիկ վճարեցի 18 ոսկի.., | 1,800 | | |
| | Յ. Նշանեանի ղրկած տակառներուն համար փոխադրութեան ծախք եւ սայլի վարձք . . . . | 1,230 | | |
| | Սայլի հմր ձի մը գնեցի 25 ոսկի | 2,500 | | |
| | Սայլ մը գնեցի 5 ոսկի . . . . | 500 | | |
| | Վաճառատանս համար գնեցի գրասեղան եւ աթոռներ 10 ոսկի։ | 1,000 | | 47,030 |
| | Նոյն 7 | | | |
| 1 | Ղրկեցի Ե. Օհանեանին, յիւկիւտար, 10 տակառ գինի, 250 ղրշ. էն, ամսոյս վերջը վճարելի, առանց զեղչի . . . . . . . . | 2,500 | | |
| 1 | Ղրկեցի Թ. Սուրէնեանին, Նըպարավաճառ ի Գատը գիւղ, 6 տակառ քացախ, 140 ղրշ. էն, ամսոյս 30ին վճարելի, առանց զեղչի . . . . . . . . | 840 | | 3,340 |
| | Նոյն 15 | | | |
| 1 | Ղրկեցի Ն. Ոսկանեանին, գինեվաճառ ի Գատը գիւղ, 10 տակառ գինի, 225 ղրշ. էն, վճա- | | | |
| | Փոխադրելի . . . . | | | 160,075 |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | Փոխադրեալ | | | 160,075 | |
| | րելի իմ փոխանակագրովս 1893 հոկտ. 31ին . . . . . | 2,250 | | 2,250 | |
| | Նոյն 15 | | | | |
| 1 | Վերադարձուցի ի Տարտանէլ Գ. Քրիսեանին, իւր 1893 դեկտ. 15ին վճարելի փոխանակագիրը՝ ընդունելով զայն . . . . . . | 2,793 | | | |
| | 2,850 ղրշ.ին վրայ % 2 շնորհեալ զեղչ . . . . . . | 57 | | 2,850 | |
| | Նոյն 15 | | | | |
| 1 | Ե. Օհաննեան, յՒւսկիւտար, ի հաշիւ դրկեց Գրէտի Լիօնէէն ի տես գանձելի փոխանակագիր մը . . . . . | 824 | 50 | 824 | 50 |
| | Նոյն 16 | | | | |
| 1 | Ստացայ Յ. Միքայէլեանէ, վաճառական յԻզմիր, 10,000 քիլօ շաքար, 100 քիլօն 280 ղրշ. վճարելի ի տես վճարագրով մը . . . | 28,000 | | 28,000 | |
| | Նոյն 17 | | | | |
| | Կանխիկ ծախեցի 1 տակառ գինի | 250 | | | |
| | Կանխիկ ծախեցի 8000 քիլօ շաքար, 100 քիլօն 325 ղրշի . . | 26,000 | | 26,250 | |
| | Նոյն 17 | | | | |
| 2 | Մ. Անանեանի դրկած քացախին համար փոխադրութեան եւ սայլի վարձք . . . . . . | 125 | | 125 | |
| | Նոյն 18 | | | | |
| 2 | Ստացայ Գ. Քրիսեանէն, վաճառական ի Տարտանէլ, 20 տկ. սպիտակ գինի, 162 1/2 ղրշէն | 3,250 | | 3,250 | |
| | » | | | | |
| 2 | Ղրկեցի Օ. Նշանեանի, վաճառական յԷտիրնէ, իմ թիւ 2 վճարագիրս սեղանաւոր Գ. Սապօնճեանի վրայ . . . . . . | 8,322 | 60 | | |
| | Պայմանադրեալ զեղչ % 3 . . . . | 257 | 40 | 8,560 | |
| | Փոխադրելի . . | | | 232,204 | 50 |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | Փոխադրեալ | | | 232,204 | 50 |
| | 1893 Սեպտ. 27 | | | | |
| 2 | Ղրկեցի Մ. Անանեանի, վաճառական ի Ռոտոսթօ, փոխանակագիրս՝ Օսմանեան Պանգային վրայ . . . . . . . . | 824 | 50 | | |
| | Զեղչ %3 . . . | 25 | 50 | 850 | |
| | Նոյն 27 | | | | |
| 2 | Կանխիկ ծախեցի 15 տկ. Տարտանէլի գինի, 225 ղրշ.էն | 3,375 | | | |
| | 10 տակառ Էտիրնէի գինի, 300 ղրշ.էն . . . . . . . . | 3,000 | | 6,375 | |
| | Նոյն 30 | | | | |
| 2 | Ստացայ Թ. Սուրէնեանէն, նպարավաճառ ի Գատըգիւղ, մեր ներկայ ամսոյ 7ի հաշուեցուցակին փոխարէն . . . . . . . | 823 | 20 | | |
| | %2 զեղչ 840 ղրշ.ին վրայ | 16 | 80 | 840 | |
| | » | | | | |
| 2 | Ստացայ Ն. Ոսկանեանէ, ի Գատը գիւղ, ամսոյս 15 ի հաշուեցուցակիս փոխարէն, իւր տոմսակը իմ/հ. յառաջիկայ հոկտ. 31 ին վճարելի . . . . . . . | 2,250 | | 2,250 | |
| | » | | | | |
| | Ամսեգլխոյ առթիւ վաճառատանս պաշտօնէից վճարեցի . . | 800 | | | |
| | Տանս ծախուց համար առի . . . | 750 | | | |
| | Մանր ծախք . . . . . . | 34 | | | |
| | Անձնական ծախուցս համար . . | 250 | | 1,834 | |
| | Գումար | | | 244,353 | 50 |

## ՕՐՀԱՇԻՒ

57. Վաճառական մ'որ Ձեռատետր կը գործածէ, պարտի անոր մէջ արձանագրած գործառնութիւնները փոխադրել Օրհաշուոյն մէջ, որ պարզապէս Ձեռատետրին մէկ ընդօրինակութիւնը կ'ըլլայ, սա տարբերութեամբ որ կը խմբագրուի սովորութեան նուիրագործած ձեւով մը եւ բառերով։

## ՕՐԻՆԱԿ ՕՐՀԱՇՈՒՈՑ

| Երեսք Մատ. Հաշւոյ | Խորհ. թերթ | | | |
|---|---|---|---|---|
| | 1 | —— 1 սեպտ. 1893 —— | | |
| 9 | | Պարտք Սնտուկ. Հօրմէս ստացած դրամագլուխս | 100,000 | 100,000 |
| | 2 | —— 2 —— | | |
| 1 | | Պահանջք Յ. Նշանեան, վաճառական յԷտիրնէ, իւր ամսոյ 1ի հաշուեցուցակը, վճարագրով մը վճարելի, զեղչ % 3 . . . | 8,580 | |
| 2 | | Պահանջք Մ. Անանեան, վաճ. ի Ռոտոսթօ, իւր ամսոյ 1 ի հաշուեցուցակը, վճարելի Ռոտոսթոյի վրայ ի տես վճարագրով մը . . . . . . . . | 1,125 | 9,705 |
| | 3 | —— 4 —— | | |
| 8 | | Պարտք Գ. Սապօնճեան, սեղանաւոր, ընթացիկ հաշուով տուածս, 400 Օսմ. ոսկի . . . . . . . . | 40,000 | |
| 9 | | Պահանջք սնտուկ. Մթերանոցիս Ճամուան վարձքը կանխիկ վճարեցի 18 ոսկի . . . . . . . . . . | 1,800 | |
| | | Ծախք փոխադրութեան եւ սայլի վարձք Յ. Նշանեանի ղրկած տակառներուն համար . . | 1,230 | |
| | | Գնեցի ձի մը եւ սայլ մը | 3,000 | |
| | | Գնեցի դրասեղան եւ աթոռներ վաճառատանս համար . . . . . . . . | 1,000 | 47,030 |
| | | Փոխադրելի | | 156,735 |

| Երես Մատ. Հաշւոյ | Խըն. թերթ | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | Փոխադրեալ | | | 156,735 | |
| | 4 | —— 7 սեպտ. 1893 —— | | | | |
| 3 | | Պարտի Ե. Օհանեան, յՈւսկիւտար, իմ այս օրուան հաշուեցուցակիս . . . | 2,500 | | | |
| 4 | | Պարտի Թ. Սորէնեան, նպարավաճառ ի Գատը-գիւղ, իմ այս օրուան հաշուեցուցակիս . . . . . | 840 | | 3,340 | |
| | 5 | —— 15 —— | | | | |
| 5 | | Պարտի Ն. Ոսկանեան, գինեվաճ. ի Գատը գիւղ, իմ այս օրուան հաշուեցուցակիս . . . . . . . | 2,250 | | | |
| 6 | | Պարտի Պ. Քրիսեան, ի Տարտանէլ, իմ 15 դեկտ. 1893ին վճարելի փոխանակագիրս . . . . . . . . | 2,793 | | | |
| | | % 2 զեղչ 2850 ղրշ. ին վրայ . . . . . . . . . . . . | 57 | | 5,100 | |
| | | —— 15 —— | | | | |
| 3 | | Պահանջէ Ե. Օհանեան, յՈւսկիւտար, իւր ի տես փոխանակագիրը Գրէտի Լիոնէէն . . . . . . . . . | 824 | 50 | 824 | 50 |
| | 6 | —— 16 —— | | | | |
| 7 | | Պահանջէ Յ. Միքայէլեան, վաճ. յԻզմիր, իւր 10,000 քիլօ շաքարին հաշուեցուցակը, 100 քիլօն 280 ղշի | 28,000 | | 28,000 | |
| | 7 | —— 17 —— | | | | |
| 9 | | Պարտի Սնտուկը. Կանխիկ ծախեցի 1 տակառ գինի. | 250 | | | |
| | | Կանխիկ ծախեցի 8000 քիլօ շաքար, 100 քիլօն 325 ղշ. ի | 26,000 | | 26,250 | |
| 9 | | Պահանջէ Սնտուկը. փո- | | | | |
| | | Փոխադրելի | | | 220,249 | 50 |

| Երես Մատ. Հաշուոյ | Խըն-տէր | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | Փոխադրեալ | | | 220,249 | 50 |
| | | Խուրդ. ծախք՝ առաքման Մ. Անանեան ի Ռոտոսթօ | 125 | | 125 | |
| | | ——93 սեպտ. 18—— | | | | |
| 6 | | Պահանջք Պ. Քրիսեան, վաճառական ի Տարտանէլ, իւր ամսոյն 10ի հաշուեցուցակը, վճարելի 91 օրէն, զեղչ % 2 . . . . | 3,250 | | 3,250 | |
| | | —— » —— | | | | |
| 1 | | Պարտք Յ. Նշանեան, վաճ. յէտիրնէ, իմ թիւ 2 վճարագիրս Գ. Սապօնճեանի վրայ | 8322 | 60 | | |
| | | Պայմանադրեալ զեղչ % 3 | 257 | 40 | 8,580 | |
| | | ——27—— | | | | |
| 2 | | Պարտք Մ. Անանեան, ի Ռոտոսթօ, փոխանակագիրս Օսմ. Պանքային վրայ | 824 | 50 | | |
| | | Զեղչ % 3 . . . . | 25 | 50 | 850 | |
| | | —— » —— | | | | |
| 9 | | Պարտք Սնտուկը. կանխիկ ծախեցի 15 տակառ Տարտանէլի գինի, 225 ղշ.էն | 3,375 | | | |
| | | եւ 10 տակառ Էտիրնէի գինի, 300 ղրշ.էն . . . | 3,000 | | 6,375 | |
| | | ——30—— | | | | |
| 4 | | Պահանջք Թ. Սուրէնեան ի Գատը գիւղ, իւր ղրկած դրամը՝ հաշիւը փակելու համար . . . . . . . . | 823 | 20 | | |
| | | % 2 զեղչ 840 ղրշին վրայ | 16 | 80 | 840 | |
| | | —— » —— | | | | |
| 5 | | Պահանջք Ն. Ոսկանեան, ի Գատը գիւղ, իմ/հ իւր տոմսակը յառաջիկայ հոկ. | | | | |
| | | Փոխադրելի | | | 240,269 | 50 |

անձին վիճակը չեն ներկայացներ մեզ այդ ծիր ու ցան խնդիրք։ Այս պատճառաւ, Մայր-Հաշուոյն մէջ իւրաքանչիւր անձի համար հաշիւ մը կը բանանք։ Այս հաշիւը երկու երես կը պարունակէ, ձախ եւ աջ։ Երկու երեսներն ի միասին կը կազմեն կիսաթերթ (folio) մը։

Ձախ կողմը, խոշոր գրերով կը գրեն Պարտի բառը. աջ կողմը՝ Պահանջէ բառը։ Այս երկու բառերուն մէջտեղ կը գրեն անունն այն անձին որուն համար բացուած է հաշիւը, աւելցնելով նաեւ իւր հասցէն։

Երկու կողմերն ալ՝ սիւնակներ պիտի յատկացուին թուականներուն եւ գումարներուն համար։ Սիւնակ մ'ալ պիտի յատկացուի՝ նշանակելու համար Օրհաշուոյն այն երեսներուն թիւերը որոցմէ առնուած են խնդիրները։

. Մայր-Հաշուոյն մէջ, խնդիրները պէտք է շատ համառօտ գրուին, միայն մէկ տող բռնելու չափ։



# ՄԱՅՐ—
# ԸՆԹԱՑԻԿ

1 ՊԱՐՏԻ **Ց. ՆՇԱՆԵԱՆ** ՎԱՃԱՌԱԿԱՆ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| *Սեպտ.* | 18 | *Վճարագիր Գ. Սապօնճեանի վրայ* | 4 | 8322 | 60 |
| | 18 | *Զեղչ* % 3 . . . . . . | 4 | 257 | 40 |
| | | | | 8580 | |

2 ՊԱՐՏԻ **Մ. ԱՆԱՆԵԱՆ** ՎԱՃԱՌԱԿԱՆ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| *Սեպտ.* | 27 | *Ղրկեցի ի տես փոխանակագիրս Ռուստամթոյի վրայ* . . . | 4 | 824 | 50 |
| | | *Զեղչ* % 2. *սեպտ.* 1 *ի հաշուեցուցակին վրայ* . . . | | 25 | 50 |
| — | 30 | ԿՇԻՌ . . . . . . | | 275 | |
| | | | | 1,125 | |

3 ՊԱՐՏԻ **Ե. ՕՀԱՆԵԱՆ** ՅԻՒՍԿԻՒՏԱՐ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| *Սեպտ.* | 7 | *Հաշուեցուցակս* . . . . | 2 | 2,500 | |
| | | | | 2,500 | |
| *Հոկտ.* | 1 | *Պարտք ի նորոյ* . . . . | | 1,675 | 50 |

4 ՊԱՐՏԻ **Թ. ՍՈՒՐԷՆԵԱՆ** ՆՊԱՐԱՎԱՃԱՌ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| *Սեպտ.* | 7 | *Հաշուեցուցակս* . . . . | 2 | 840 | |
| | | | | 840 | |

# ՀԱՇԻՒ

## ՆԱՇԻՒՔ

ՄԷՏԻՐՆԷ — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 2 | Իւր հաշուեցուցակը . . . | 1 | 8,580 | |
| | | | | 8.580 | |

Ի. ՌՈՏՈՍԹՕ — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 2 | Իւր հաշուեցուցակը . . . | 1 | 1,125 | |
| | | | | 1,125 | |
| Հոկտ. | 1 | Պահանջք ի նորոյ . . . . | | 275 | |

ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 15 | Իւր ի տես վճարագիրը . . | 3 | 824 | 50 |
| — | 30 | ԿՇԻՌ . . . . . . . | | 1,675 | 50 |
| | | | | 2,500 | |

ԳԱՏԸ ԳԻԻԴ. — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1393 | | | | | |
| Սեպտ. | 30 | Իւր ղրկած դրամը . . . | 4 | 823 | 20 |
| | | Սեպտ. 7 հաշուեցուցակիս վրայ %2 զեղչ . . . . . | | 16 | 80 |
| | | | | 840 | |

## 5 ՊԱՐՏԻ Ն. ՈՍԿԱՆԵԱՆ ԳԻՆԵՎԱՃԱՌ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 15 | Հաշուեցուցակս . . . . | 2 | 2,250 | |
| | | | | 2,250 | |

## 6 ՊԱՐՏԻ Պ. ՔՐԻՍԵԱՆ ՎԱՃԱՌԱԿԱՆ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 15 | Իմ փոխանակագիրս 1893 դեկ. 15ին վճարելի . . . . | | 2,793 | |
| | | 2850 ղրշ. ին վրայ շնորհեալ զեղչ ⁰/₀ 2 . . . . | | 57 | |
| | | | | 2,850 | |
| — | 30 | ԿՇԻՌ . . . . . . | | 400 | |
| | | | | 3,250 | |

## 7 ՊԱՐՏԻ Յ. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ ՎԱՃԱՌԱԿԱՆ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 30 | ԿՇԻՌ . . . . . . | | 28,000 | |

## 8 ՊԱՐՏԻ Դ. ՍԱՊՕՆՃԵԱՆ ՍԵՂԱՆԱՒՈՐ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 4 | Ընթացիկ հաշուով առի 400 Օս. ոսկի . . . . . . | 1 | 40,000 | |
| | | | | 40,000 | |
| Հոկտեմ. | 1 | Պարտք ի նորոյ . . . . | | 31,677 | 60 |

ԴԱՏԸ ԳԻՒՂ | ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 30 | Իւր տոմսակը իմ/հ, հոկտ. 31ին վճարելի . . . . . | 4 | 2,250 | |
| | | | | 2,250 | |

ՏԱՐՏԱՆԷԼ | ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 18 | Իւր հաշուեցուցակը . . . | 3 | 3,250 | |
| | | | | 3,250 | |
| Հոկտեմ. | 1 | Պահանջք ի նորոյ . . . | | 400 | |

ԻԶՄԻՐ | ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 16 | Իւր հաշուեցուցակը . . . . | 2 | 28,000 | |
| Հոկտ. | 1 | Պահանջք ի նորոյ . . . . . | | 28,000 | |

ԲԱՂԱՔԻՍ | ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | |
| Սեպտ. | 18 | Թիւ 2 վճարագիրս . . . . . | 4 | 8,322 | 60 |
| — | 30 | ԿՇԻՌ . . . . . . . . . . . | | 31,677 | 40 |
| | | | | 40,000 | — |

## ՏՈՄՍԱԿՔ — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպտ. | 27 | Հայթայթիչներէն . . | 6 | 18 | 824 | 50 | 824 | 50 |
| | | | | | | | 824 | 50 |
| — | 30 | ԽԼԻՑ ԿՇԻՌԷՆ . . . . | | | | | 2,250 | |
| | | | | | | | 3,074 | 50 |

## ՈՒՐ ԾԱԽՔ — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | |
| Սեպտ. | 30 | Վնաս եւ Շահէն | | 23 | | 1,389 |
| | | | | | | 1,389 |

## ԹԻԶՔ — ՊԱՀԱՆՋԵՆ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | |
| Սեպտ. | 2 | Ընդհ. ապրանքէն . . | 2 | 11 | 9,705 | |
| — | 16 | — — | 5 | 11 | 28,000 | |
| — | 18 | — — | 5 | 11 | 3,250 | |
| | | | | | | 40,955 |
| Հոկտ. | 1 | ՄՏԻՑ ԿՇԻՌԷՆ . . . . . | | | | 28,675 |

## ՏԱՆ ՎԱՐՁՔ — ՊԱՀԱՆՋԷ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | |
| Սեպտ. | 30 | Վնաս եւ Շահէն. . . | | 23 | | 1,800 |
| | | | | | | 1,800 |

20 ՊԱՐՏԻ — ԿԱՐՍ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 4 | Սնտուկին . . . . . . | 2 | 13 | 4,000 | | | |
| | | | | | | | 4,000 | |
| Հոկտ. | 1 | ՄՏԻՑ ԿՇՌՈՑՆ . . . . . | | | | | 4,000 | |

21 ՊԱՐՏԻ — ՏԱՆ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 30 | Սնտուկին . . . . . | 6 | 13 | 1,000 | | | |
| | | | | | | | 1,000 | |
| | | | | | | | 1,000 | |

22 ՊԱՐՏԻ — ԼՈՒՄԱ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 30 | Յաճախորդաց . . . . | 6 | 14 | 16 | 80 | | |
| — | » | Վնաս եւ Շահուն . . | | 23 | 323 | 10 | | |
| | | | | | | | 339 | 90 |
| | | | | | | | 339 | 90 |

23 ՊԱՐՏԻ — ՎՆԱՍ ԵՒ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | |
| Սեպ. | 30 | Ամսաթոշակաց . . . | 10 | 8)0 | | | |
| — | 30 | Ընդհանուր ծախուց | 17 | 1,389 | | | |
| — | 30 | Վաճառատ. վարձուց | 19 | 1,800 | | | |
| — | 30 | Տան ծախուց . . . | 21 | 1,000 | | | |
| | | | | | | 4,989 | |
| — | 30 | Դրամագլխին. մնաց-սեալ զուտ շահս . . | | | | 1,481 | 60 |
| | | | | | | 6,470 | 60 |

Ծանօթ. — Յ. Նշանեանի, Մ. Անանեանի, Ե. Օհանեա-նի, Թ. Սուրէնեանի, Ն. Ոսկանեանի, Գ. Քրիսեանի, Յ. Միքայէլեանի, Յ. Խաչիկեանի մասնաւոր հաշիւները տե երես 36—39։

## ՍԻՔ

ՊԱՀԱՆՋ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 30 | | | | | | | |
| | | ԵԼԻՑ ԿՇԻՌԷՆ . . . . | | | | | 4,000 | |
| | | | | | | | 4,000 | |

## ԾԱԽՔ

ՊԱՀԱՆՋ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 30 | Վնաս եւ Շահէն . . | | 23 | | | 1,000 | |
| | | | | | | | 1,000 | |

## ՑԱՇԱՀ

ՊԱՀԱՆՋ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 15 | Հայթայթիչներէն . . | 4 | 18 | 57 | | | |
| — | 18 | — . . . . | 5 | 18 | 257 | 40 | | |
| | 27 | — . . . . | 6 | 18 | 25 | 50 | 339 | 90 |
| | | | | | | | 339 | 90 |

## ՇԱՀ(1)

ՊԱՀԱՆՋ

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1893 | | | | | | | | |
| Սեպ. | 30 | Ընդհ. ապրանքէն . . | | 11 | | | 6,147 | 50 |
| — | » | Լումայաշահէն . . . | | 22 | | | 323 | 10 |
| | | | | | | | 6,470 | 60 |

(1) Ընդհանրապէս կը գործածուի Շահ եւ Վնաս անունը. բայց ուրովհետեւ այս հաշուոյն մէջ Պարտքին կողմը միշտ Վնաս կը ցուցնէ, եւ Պահանջին կողմն ալ Շահ կը ցուցնէ, աւելի բնական ըլլալու համար՝ յարմար դատեցինք Վնաս եւ Շահ անուանել զայն։

## ՑԱՆԿ ՄԱՅՐ ՀԱՇՈՒՈՑ

87. Մայր-Հաշուոյ մէջ հաշիւ մը գտնելու համար, հարկ պիտի ըլլար բոլոր թղթերը թղթատել։ Այս դժուարութենէն ազատելու համար, Մայր-Հաշուոյն սկիզբը կամ զատ տետրակի մը մէջ Ցանկ (répertoire) մը կը շինուի, որուն մէջ այբուբենական կարգաւ կ'արձանագրուին բոլոր հաշիւները, մասնաւոր սիւնակի մը մէջ նշանակելով այն էջը ուր արձանագրուած է այդ հաշիւը։

### ՕՐԻՆԱԿ ՑԱՆԿԻ

| Ա. | Երես | Ն. | Երես |
|---|---|---|---|
| Ամսաթոշակք . . . . | 10 | Նշանեան Յ. . . . . . | 1 |
| Անանեան Մ. . . . . | 2 | Ո. | |
| Գ. | | Ոսկանեան Ն. . . . . . | 5 |
| Գանձելի տոմսակք . . | 16 | Ս. | |
| Դ. | | Սապօնճեան Գ. . . . . | 8 |
| Դրամագլուխ . . . . | 9 | Սեղանաւորք . . . . | 12 |
| Ը. | | Սնտուկ . . . . . . | 13 |
| Ընդհ. ապրանք . . . | 11 | Սուրէնեան Թ. . . . . | 4 |
| Ընդհ. ծախք . . . | 17 | Վ. | |
| Լ. | | Վաճառատան վարձք . . | 19 |
| Լումայաշահ . . . . | 22 | Վճարելի տոմսակք . . | 15 |
| Կ. | | Վնաս եւ Շահ . . . . | 23 |
| Կարասիք . . . . . . | 20 | Տ. | |
| Հ. | | Տան ծախք . . . . . | 21 |
| Հայթայթիչք . . . . . | 18 | Ք. | |
| Մ. | 7 | Քրիսեան Գ. . . . . . | 6 |
| Միքայէլեան Յ. . . . . | | Օ. | |
| Յ. | 14 | Օհանեան Ե. . . . . . | 3 |
| Յաճախորդք . . . . . | | | |

.........................

## ՄՆՏՈՒԿԻ ՏԵՏՐԱԿ

88. Կրկնատումարի մէջ, Մնտուկի տետրակը մեր արդէն ցոյց տուած ձեւէն (թիւ 60) տարբեր ձեւ չունի։ Սակայն յաճախ կը գործածուի նաեւ ուրիշ ձեւ մը, որուն օրինակը պիտի երեւի ի ստորեւ։

Մուտքերը կը գրուին ձախ կողմը. Ծախքերը՝ աջ կողմը։ Մուտքերու գումարին՝ ծախքերու գումարին վրայ ունեցած առաւելութիւնը կը ցուցնէ սնտուկին մէջ գտնուած պատրաստ դրամը։

## ԳՆՄԱՆ ԵՒ ՎԱՃԱՌՄԱՆ ՏԵՏՐԱԿՆԵՐ

89. Շատ վաճառականներ առանձին տետրակներ կը բռնեն գնմանց եւ վաճառմանց համար։ Գնումները եւ վաճառումները այս տետրակաց մէջ կ'արձանագրուին այնպէս, ինչպէս Պարզատումարի Օրհաշուոյն մէջ։

Գնման տետրակին մէջ կ'օրինակուին գնուած ապրանաց հաշուեցուցակները, որչափ ալ ընդարձակ եւ բազմաթիւ ըլլան. իսկ Վաճառման տետրակին մէջ կ'օրինակուին ծախուած ապրանաց հաշուեցուցակներն։ Վաճառման տետրակը կ'օգնէ առաջքն առնելու՝ ծախուած ապրանաց քանակութեան, եւայլն, մասին ըլլալիք վէճերուն։

Գնման տետրակին մէջ իւրաքանչիւր անձի անունը կ'ըսկըսի Պահանջքով, իսկ վաճառման տետրակին մէջ Պարտքով։

90. Գնման տետրակին մէջ իւրաքանչիւր ամսոյ գումարը պէտք է հաւասար ըլլայ՝ Մայր-Հաշուոյն մէջ բացուած Ընդհանուր ապրանքի հաշուոյն նոյն ամսոյ Պարտքի գումարին։

Վաճառման տետրակին ալ իւրաքանչիւր ամսոյ գումարը (ապառիկներուն եւ կանխիկներուն միանգամայն) պէտք է հաւասար ըլլայ՝ Ընդհ. ապրանքի հաշուոյն նոյն ամսոյ Պահանջքի գումարին։

Ի ստորեւ կ'երեւին Գնման եւ Վաճառման տետրակներու օրինակներ։

## ՓՈՐՁԱԿՇԻՌ

91. *Կրկնատումարի դրութեան շնորհիւ, ինչպէս արդէն ըսինք, վաճառականը կարող կ'ըլլայ հանապազ ճշդելու իր տետրակները։ Փորձակշիռները սովորաբար կը պատրաստուին ամիսը կամ երեք ամիսը մէկ անգամ։*

92. *Փորձակշիռը ցոյց կուտայ թէ արդեօք բոլոր նիւթերը ընդհանուր հաշուոց մէջ փոխադրուա՞ծ են եւ թէ փոխադրուած գումարները ճի՞շդ են։*

*Ահա՛ թէ ի՛նչպէս կը պատրաստուի Փորձակշիռը։ 4 սիւնակներու բաժնուած թերթ մը թուղթի վրայ կը գրեն՝*

*Ա. սիւնակին մէջ, իւրաքանչիւր Ընդհանուր հաշուոյ մէկ ամսուան պարտքին գումարը։*

*Բ.ին մէջ, նոյն հաշուոց պահանջքին գումարը։*

*Գ.ին մէջ, այս հաշիւներէն իւրաքանչիւրին՝ պարտուց առաւելութիւնը պահանջքին վրայ. (Պարտական տարբերութիւն)։*

*Դ.ին մէջ, այս հաշիւներէն իւրաքանչիւրին՝ պահանջքին առաւելութիւնը պարտքին վրայ, (Պահանջող տարբերութիւն)։*

*Որպէս զի կշիռը ճիշդ ըլլայ, պէտք է որ Ա. սիւնակին (Պարտք) գումարը հաւասար ըլլայ Բ. սիւնակին (Պահանջք) գումարին։ Նոյնպէս Գ. սիւնակի (Պարտական տարբերութիւն) գումարը պէտք է հաւասար ըլլայ Դ. սիւնակի (Պահանջող տարբերութիւն) գումարին։*(1)

---

(1) *Կրկնատումարի մէջ, իւրաքանչիւր նիւթ միեւնոյն ժամանակ կ'արձանագրուի հաշուոյ մը պարտքին կողմը, ուրիշ հաշուոյ մ'ալ պահանջքին կողմը (Թիւ 71)։ Ասկէ ծագում առած է արդէն Կրկնատումար անունը։ Արդարեւ, երբ՝ օրինակի համար՝ վաճառականը դրամ կ'ընդունի՝ ընդունողը իր սնտուկն է. ուրեմն Սնտուկին հաշիւը պարտական պիտի ըլլայ, եւ որովհետեւ դրամը տուողն ալ հաշիւ մը պիտի ունենայ, այս վերջին հաշիւն ալ պահանջող՝ պիտի ըլլայ. հետեւաբար առաջին հաշուոյն մէջ նշանակուած պարտքը հաւասար պիտի ըլլայ երկրորդ հաշուոյն մէջ նշանակուած պահանջքին։ Դարձեալ, երբ օրինակի համար՝ վաճառականը կանխիկ դրամով ապրանք կը գնէ, ընդունողն է Ընդհ. ապրանք հաշիւը, հետեւաբար պարտական պիտի ըլ-*

# ՕՐԻՆԱԿ ՓՈՐՁԱԿՇՌՈՒ

## Փորձակշիռ 1893 սեպտեմբեր ամսոյ

| Ե. | Հաշիւք | Պարտք | | Պահանջք | | Պրտ. մնաց. | | Պհնջ. մնց. | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 9 | Դրամարկղուն | | | 100,000 | | | | 100,000 | |
| 11 | Ընդհ. ապրանք | 40,955 | | 38,215 | | 2,740 | | | |
| 10 | Ամսաթոշակք | 800 | | | | 800 | | | |
| 12 | Սեղանաւորք | 40,000 | | 8,322 | 60 | 31,677 | 40 | | |
| 13 | Սնտուկ . . . | 133,448 | 20 | 48,989 | | 84,459 | 20 | | |
| 14 | Յածախորդք . | 5,590 | | 3,914 | 50 | 1,675 | 50 | | |
| 15 | Վճարելի. ամս. թուղթք . . . | | | 2,793 | | | | 2,793 | |
| 16 | Գոմ ձեղի ամս. | 3,074 | 50 | 824 | 50 | 2,250 | | | |
| 18 | Հայթայթիչք | 12,280 | | 40,955 | | | | 28,675 | |
| 17 | Ընդհ. ծախք | 1,389 | | | | 1,389 | | | |
| 20 | Կարասիք . . | 4,000 | | | | 4,000 | | | |
| 19 | Վճար. վարձք | 1,800 | | | | 1,800 | | | |
| 21 | Տան ծախք . . | 1,000 | | | | 1,000 | | | |
| 22 | Լուծմայաշահ | 16 | 80 | 339 | 90 | | | 323 | 10 |
| | | 244,353 | 50 | 244,353 | 50 | 131,791 | 10 | 131,791 | 10 |

լոյ. տուողն է Սնտուկը, հետեւաբար պահանջող պիտի ըլլայ. հոս ալ Ընդհ. ապրանքին պարտական եղած գումարը բնականաբար հաւասար պիտի ըլլայ Սնտուկին պահանջող եղած գումարին։ Կը հասկցուի ուրեմն թէ ինչո՛ւ համար է որ, Փորձակշռոյն մէջ, բոլոր պարտքերուն գումարներուն բովանդակութիւնը հաւասար պիտի ըլլայ բոլոր պահանջներուն գումարներուն բովանդակութեան, նոյնպէս ալ Օրհաշուոյն մէջ արձանագրուած նոյն ամսոյ գործառնութեանց ընդհանուր գումարին։

Ուրեմն, Փորձակշռոյն շնորհիւ, Մայր-Հաշուոյն ճշդութիւնը կ'ստուգուի Օրհաշուով, եւ Օրհաշուոյն ճշդութիւնը՝ Մայր-Հաշուով։

Եթէ վերոյիշեալ հաւասարութիւնը չը գտնուի, եթէ դոյզն տարբերութիւն մը խսկ երեւան գայ, այդ կը նշանակէ թէ կամ սխալ փոխադրութիւն մ'ըրած ենք Օրհաշուէն ի Մայր-հաշիւ կամ բան մը մոռցած ենք փոխադրել։ Այն ատեն աշխատելու է սխալը գտնել։ Գտնուած սխալն ուղղելու կերպին վրայ իւր կարգին պիտի խօսինք։

Բացաստի, թէ՛ Ա. սիւնակին (Պարտք) եւ թէ՛ Բ. սիւնակին (Պահանջք) գումարները հաւասար են Օրհաշուոյն նոյն ամսոյ գումարին։ Այսպէս, կը գտնենք որ պարտքն է 216,628 ու կէս ղրուշ, որ հաւասար է պահանջքին, եւ նոյնպէս հաւասար է Օրհաշուոյ գումարին։ Ուրեմն ապահով ենք որ ո՛չ նիւթ մը մոռցած ենք արձանագրելու եւ ո՛չ ալ միեւնոյն նիւթը կրկին արձանագրած ենք։

Փորձակշռոյն սկիզբը, նեղ սիւնակին մէջ դրուած թըւանշանները ցոյց կուտան Մայր-Հաշուոյն, այն երեսներուն թիւերը, ուր արձանագրուած են այդ հաշիւները։

# ՏԵՏՐԱԿՆԵՐԸ ԳՈՑԵԼՈՒ ԿԵՐՊԸ

---

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿՇԻՌ

93. Ընդհանուր Կշիռի պատրաստութեան նպատակն է Կրկնատումարի տետրակաց արդիւնքն իմանալ, այսինքն գիտնալ գոյացած զուտ շահը կամ վնասը, ինչպէս նաեւ վաճառականին ներկայ վիճակը, պատրաստ ունեցած գոյքերուն (ապրանք, դրամ եւ կարասիք) ընդհանուր ցուցակը, իր պահանջից քանակութիւնը եւ պարտուց քանակութիւնը։ Այս գործողութիւն տեղի կ'ունենայ երեք կամ վեց ամիսը մի անգամ, նոյնպէս սնանկութիւն կամ մահ պատահած ատեն, կամ ընկերութիւն մը լուծուած ատեն, կամ գործին մէջ ընկեր մը եւս առնուած ատեն. երբեմն ալ՝ երբ տետրակները լեցուած են եւ նոր տետրակներ պէտք է սկսիլ։ Բայց այս վերջին պարագային մէջ Ընդհանուր Կշիռի պատրաստութիւնն անհրաժեշտ չէ, վասն զի կարելի է բաւականանալ՝ իւրաքանչիւր հաշուոյ համար պարզ փոխադրութեամբ մը հին տետրակէն ի նոր տետրակ։

Այս գործողութիւն, տոմարակալութեան գործողութեանց մէջ ամէնէն կարեւորը, Ընդհանուր Կշիռ բռնած է

անոր համար որ, զայն կատարելու համար՝ պէտք է կշռել, կամ թէ ըսենք՝ փակել, բոլոր հաշիւները։ (1)

94. Ընդհանուր Կշիռը պատրաստելէ առաջ, մէկ քանի նախապատրաստական գործողութիւններ կան ընելիք։

1° Նախ պատրաստած ըլլալու է Փորձակշիռը (թիւ 91, 92), Օրհաշուէն ի Մայր-Հաշիւ անցած գործողութեանց ճշդութեանը ապահով ըլլալու համար։

2° Պատրաստելու է վաճառատան կամ մթերանոցին մէջ մնացած պատրաստ ապրանաց ցուցակը, որուն գինով արժեցընելով զայնս, այսինքն այնպիսի գինով մը որով անմիջապէս ծախել կարելի ըլլայ։ Պէտք է շինել նաեւ թղթապանակը գտնուած գանձելի թղթոց ցուցակը, զանազաններէ եղած պահանջից ցուցակը, շրջաբերութեան մէջ եղած վճարելի թղթոց ցուցակը, եւ զանազաններու եղած պարտուց ցուցակը։ Նոյնպէս պէտք է որուն գինով արժեցնել վաճառատան կարասիքը եւ վաճառականին շարժուն եւ անշարժ ստացուածքը, եթէ ունի։

3° Պէտք է փակել բոլոր հաշիւները, այնպէս ինչպէս 58րդ երեսի ծանօթութեան մէջ բացատրած եմք։

95. Միայն թէ, Ընդհանուր Ապրանքին հաշիւը փակելու համար, պէտք է վաճառատունը կամ մթերանոցը մնացած ապրանքներուն արժէքը պահանջքին կողմը գրել, եւ յետոյ Պարտքին ու Պահանջքին սիւնակները գումարելով, տարբերութիւնն անցունել Վնաս եւ Շահով։ Այսպէս, մեր վաճառատան մէջ մնացած ապրանքները ցուցակագրելով (երես 82), գտած ենք 8,887 $^1/_2$ ղրուշի պատրաստ ապրանք։ Այս գումարը գրեցինք Ընդհանուր Ապրանքի հաշուոյն (երես 58) Պահանջքին կողմը, Պարտքին եւ Պահանջքին սիւնակները գումարեցինք. երկու գումարներուն տարբերութիւնը, որ

(1) Գիտենք արդէն թէ հաշիւ մը կշռել կամ փակելը՝ պարտքը եւ պահանջքը հաւասարեցնել է. կամ թէ ըսենք, աւելցնել է՝ կա՛մ պարտքին կա՛մ պահանջքին կողմը, որ կողմին որ գումարը աւելի փոքր է, այն տարբերութիւնը որ այս փոքր կողմը պիտի հաւասարեցնէ մեծ կողմին։

է 6147,50 ղրշ, կը ցուցնէ գոյացած շահը. ուստի հաշիւը փակեցինք վնաս եւ շահով. Այս 6147,50 ղրշ շահը պիտի փոխադրուի Վնաս եւ Շահ հաշուոյն Պահանջքին կողմը։ Իսկ Ընդհանուր ապրանքին հաշիւը վերստին պիտի բացուի պատրաստ ապրանքին վերոյիշեալ 8887,50 ղրշ արժէքովը, ինչպէս կ'երեւի նոյն հաշուոյն մէջ։

96. Գալով Վնաս եւ Շահ հաշուոյն, որովհետեւ այս հաշուոյն պարտքը կը բաղկանայ բոլոր ծախքերէն կամ մնանակի վնասներէն, եւ պահանջքն ալ բոլոր շահերէն, հետեւաբար պարտքին՝ պահանջքին վրայ ունեցած առաւելութիւնը վնաս կը ցուցնէ, իսկ պահանջքին՝ պարտքին վրայ ունեցած առաւելութիւնը կը ցուցնէ ընդհանուր գործառնութեանց մէջ գոյացած շահը։ Արդ, այս շահը կամ կորուստը մեր դրամագլխոյն վրայ կը ներգործէ՝ զայն աւելցնելով կամ պակսեցնելով. ուստի Վնաս եւ Շահ հաշիւը պիտի փակենք Դրամագլուխ հաշուոյն միջոցաւ, եւ գոյացած վնասը եւ շահն ալ պիտի փոխադրենք Դրամագլուխ հաշուոյն մէջ։

97. Ասոնցմէ կը հետեւի թէ, Ընդհանուր ապրանք, Վնաս եւ Շահ, Դրամագլուխ հաշիւները եզերքի ձգելով, նախ փակելու է բոլոր միւս հաշիւները, յետոյ Ընդհանուր ապրանքը, յետոյ Վնաս եւ Շահը, ամենէն վերջը Դրամագլուխ հաշիւը՝ Ելից Կշռոյն միջոցաւ։

98. Կը մնայ այժմ բանալ Ելից Կշիռ անուն հաշիւը։

Կը յիշուի որ, բաց ի վնաս կամ շահ ցուցնող հաշիւներէն, միւս բոլոր հաշիւները փակուեցան Ելից Կշռոյն միջոցաւ, որ այս կերպիւ կը միացնէ վաճառատանին բոլոր գոյքը եւ բոլոր պարտքը։

Ուստի Ելից Կշիռ հաշիւը մէկ կողմանէ (Պարտքին կողմը) պիտի պարունակէ վաճառատանին բոլոր գոյքը, եւ միւս կողմանէ (Պահանջքին կողմը)՝ վաճառատանին պարտքը։ Կամ թէ ըսենք, Ելից Կշիռին Պարտքին կողմը պիտի նշանակենք վաճառատանին պատրաստ ունեցած ապրանաց արժէքը, սեղանաւորաց քով ունեցած դրամը, սնտուկին մէջ մնացած դրամը, Յանձնորդներէ ունեցած պահանջքը, Գանձելի տոմսակներէ ունեցած պահանջքը, Կարասեաց արժէքը, (այս ար-

դիւնքները. իբրեւ պարտքին՝ պահանջքին վրայ ունեցած առաւելութիւնը, նոյն հաշուոց Պահանջքին կողմը նշանակած ենք արդէն, զանոնք փակելու ժամանակ, Եղից Կշռոյն անուամբ. այսինքն այդ հաշիւները Եղից Կշռոյն պահանջող եղած են, որ ըսել է թէ Եղից Կշիռը անոնց պարտական եղած է. ասոր համար է որ Եղից Կշռոյն Պարտքին կողմը կը նշանակուին այժմ.). իսկ Եղից Կշիռին Պահանջքին կողմը պիտի նշանակենք վաճառականին Դրամագլուխն, վճարելի տոմսակներով ունեցած պարտքն եւ Հայթայթիչներուն ունեցած պարտքն. (այս արդիւնքները նշանակած ենք նոյն հաշուոց Պարտքին կողմը՝ զանոնք փակելու ժամանակ՝ Եղից Կշռոյն անուամբ. այսինքն այդ հաշիւները Եղից Կշռոյն պարտական եղած են, որ ըսել է թէ Եղից Կշիռը անոնցմէ պահանջող եղած է. ասոր համար է որ Եղից Կշռոյն Պահանջքին կողմը կը նշանակուին այժմ։)

Այս կերպով պատրաստենք մեր Եղից Կշիռը։ (Տես յաջորդ երեսը)։

99. Եղից Կշիռ հաշուոյն ինչ ըլլալը աւելի որոշ հասկցնելու համար, ենթադրենք որ այդ անուամբ մարդ մը յանձն առած է մեր գործերը կարգադրել, այսինքն գանձել բոլոր առնելիքները եւ տալ բոլոր պարտքերը։ Ինչ պիտի ընէ։ Մէկ կողմէն բոլոր պահանջքները պիտի գանձէ եւ եկած գումարները պիտի անցունէ իր մասնաւոր հաշուոյն Պարտքին կողմը. միւս կողմանէ պիտի վճարէ բոլոր պարտքերը եւ զանոնք պիտի անցունէ՝ իբրեւ տրուած դրամ՝ իր հաշուոյն Պահանջքին կողմը։ Այս հաշուոյն պարտքին՝ պահանջքին վրայ ունեցած առաւելութիւնը բնականաբար դրամարկղոյն պիտի հաւասարի։ Այս դրամագլուխն ալ Եղից Կշիռ հաշուոյն պահանջքին կողմը պիտի անցընէ՝ հաշիւը կըշռելու կամ փակելու համար։

Կը տեսնենք որ Եղից Կշիռ հաշիւն այսպէս ինքնին կը փակուի, այսինքն Պարտքին եւ Պահանջքին միջեւ տարբերութիւն մը յառաջ չգար։ Ամէն անգամ այսպէս պիտի ըլլայ. երբ Ընդհանուր Կշիռի պատրաստութեան ամբողջ ընթացքին մէջ որ եւ է սխալ չենք գործած։

| ՊԱՐՏԻ | | | ԵԼԻ |
|---|---|---|---|
| 1893 | | | |
| Սեպտ. | 30 | Ընդհանուր ապրանքին . . . . . | 8,887 | 5 |
| — | — | Սեղանաւորաց . . . . . . . . | 31,677 | 4 |
| — | — | Անտուկին . . . . . . . . . | 84,459 | 20 |
| — | — | Յաճախորդաց . . . . . . . . | 1,675 | 5 |
| — | — | Գանձելի տոմսակաց . . . . . . | 2,250 | |
| — | — | Կարասեաց . . . . . . . . . | 4,000 | |
| | | | 132,949 | 6 |

| ՊԱՐՏԻ | | | ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻ |
|---|---|---|---|
| 1893 | | | |
| Սեպտ. | 30 | Զանազանաց . . . . . . . . . | 132,949 | 6 |

Ելից Կշռոյն համառօտութիւնը կ'օրինակենք Մայր-Հաշուոյն մէջ։

## ԱՐԴԻՒՆՔ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԿՇՌՈՅ

100. Հիմա մեր առջեւ ունինք Վնաս եւ Շահ եւ Ելից Կշիռ հաշիւները։ Յիշենք որ Վնաս եւ Շահ հաշիւը ծառայեց փակելու՝ պարզապէս վնաս կամ շահ ցուցնող հաշիւները. իսկ Ելից Կշիռ հաշիւը՝ պարտք կամ պահանջք ցուցնող հաշիւները։ Այս երկու հաշիւները մեզ պիտի տան Ընդհանուր Կշռոյ արդիւնքը կամ եզրակացութիւնը։

Դիտենք որ Վնաս եւ Շահ հաշիւը կը պարունակէ զանազան գործառնութիւններէ գոյացած վնասը կամ զուտ շահը. իսկ Ելից Կշիռ հաշիւը կը պարունակէ զանազան հաշիւներէ վաճառականին ունեցած պարտքերն ու պահանջքներն, այսինքն մէկ կողմանէ՝ վաճառականին գոյքը կազմող բոլոր գումարները, եւ միւս կողմանէ՝ պարտքերը, նաեւ այն դր-

ՇԻՌ ՊԱՀԱՆՋԷ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 | | | | |
| Սեպտ. | 30 | Դրամագլխէն . . . . . . . . . | 101,481 | 60 |
| — | — | Վճարելի տոմսակներէն . . . . . | 2,793 | |
| — | — | Հայթայթիչներէն . . . . . . | 28,675 | |
| | | | 132,949 | 60 |

ԼԻՑ ԿՇՌՈՅՆ ՊԱՀԱՆՋԸ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 | | | | |
| Սեպտ. | 30 | Զանազաններէ . . . . . . . | 132,949 | 60 |

րամագլխոյ գումարը որ պարտքը կը հաւասարեցնէ պահանջքին ։

Ուրեմն, Մայր-հաշուոյն՝ հաշիւները փակելու ժամանակ, Օրհաշուոյն մէջ պիտի անցունենք Վնաս եւ Շահ եւ Ելից Կշիռ հաշիւներուն թէ՛ պարտքերը, թէ՛ պահանջները. կազմելով այդպէս Օրհաշուոյն շարունակութիւնը, ինչպէս որ ի ստորեւ կը տեսնենք ։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | *Փոխադրեալ . . .* (1) | | | 216,628 | 50 |
| | ——— 80 *սեպտ* ——— | | | | |
| 23 | ՁԱՆԱՁԱՆՔ՝ ՎՆԱՍ ԵՒ ՇԱՀԻՆ · · *միամսեայ շահ հետեւեալ հաշիւներէն . . . . . . . . .* | | | | |
| 11 | *Ընդհ. ապրանք. այս հաշիւէն եղած շահը . . . . . . .* | 6,147 | 50 | | |
| 22 | *Լուսմայաշահ. եղած շահը . .* | 323 | 10 | 6,470 | 60 |
| | ——— 30 *սեպտ.* ——— | | | | |
| 23 | ՎՆԱՍ ԵՒ ՇԱՀ՝ ՁԱՆԱՁԱՆԱՑ, *հետեւեալ հաշիւները փակելու համ.* | | | | |
| 10 | *Ամսաթոշակաց . . . . .* | 800 | | | |
| 17 | *Ընդհ. ծախուց . . . . .* | 1,389 | | | |
| 19 | *Վաճառատան վարձուց . . .* | 1,800 | | | |
| 21 | *Տան ծախուց . . . . .* | 1,000 | | | |
| 9 | *Դրամագլխուն. միամսեայ շահս* | 1,481 | 60 | 6,470 | 60 |
| | ——— *Նոյն* ——— | | | | |
| | ԵԼԻՑ ԿՇՌՈՅ՝ ՁԱՆԱՁԱՆԱՑ. *Գոյքս կազմող հետեւեալ գումարներուն համար.* | | | | |
| 11 | *Ընդհ. ապրանքին. Պատրաստ ապրանքս ըստ հաշուեկշռի . . .* | 8,887 | 50 | | |
| 12 | *Սեղանաւորաց. Իրենց քովունեցած դրամս . . . . .* | 31,677 | 60 | | |
| 13 | *Սնտուկին. պատրաստ դրամս.* | 84,459 | 20 | | |
| 14 | *Յաճախորդաց. Իրենցմէ պահանջքս . . . . . . . .* | 1,675 | 50 | | |
| 16 | *Գանձելի տոմսակաց. ունեցած գանձելի տոմսակներս ըստ հաշուեկշռի . . . . . . . .* | 2,250 | | | |
| 20 | *Կարասեաց. Պատրաստ կարասեացս արժէքը . . . . .* | 4,000 | | 132,949 | 60 |
| | ——— *Նոյն* ——— | | | | |
| | ՁԱՆԱՁԱՆՔ՝ ԵԼԻՑ ԿՇՌՈՅՆ. *Պարտքս կազմող հետեւեալ հա-* | | | | |

(1) *Հոս կը դադրեցնենք Օրհաշուոյն յաւելումները, վասն զի յաջորդ նիւթերը, մինչեւ հոկտ. 1, հաշիւներու փակ-*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| | չինելու տարբերութեանց եւ զուտ դրամագլխոյս համար . | | | | |
| 15 | Վճարելի տոմսակք. Վճարելի տոմսակներս ըստ հաշուեկշռի . . | 2,793 | | | |
| 18 | Հայթայթիչք. Հայթայթիչներու պարտքս . . . . . . | 28,675 | | | |
| 9 | Դրամագլուխ. Ներկայ զուտ դրամագլուխս . . . . . | 101,481 | 60 | 132,949 | 60 |

Դիտելու է որ Օրհաշուոյն այս հատուածը կը պարունակէ վաճառականին միամեայ գործառնութիւններէն գոյացած շահերը, ըրած վնասները, ունեցած գոյքը եւ պահանջքը, ունեցած պարտքը եւ դրամագլուխը։ Այսպէս ուրեմն, Ընդհանուր Կշիռը լրիւ հասած է իւր նպատակին, որ է բըռնուած տետրակներուն մէկ ամփոփումը ունենալ որ անոնց արդիւնքը ներկայացնէ չափագիտական ճշգրտութեամբ։

## ՀԱՇՈՒԵԿՇԻՌ

101. Հիմա կարգը եկաւ պատրաստելու մեր Հաշուեկշիռը (Inventaire կամ Bilan)։ (1)

Հաշուեկշիռը վաճառականին վիճակը ներկայացնող ցուցակ մ'է, որուն մէջ կը նշանակուին, մէկ կողմը՝ վաճառականին Գոյքը եւ միւս կողմը՝ Պարտքը, իրենց մանրամասնութիւններովը։

---

ման առթիւ միայն անցըուած են. բայց երբ, Մտից Կշիռով, արձանագրութիւնները վերստին սկսինք, յաւելումները վերըստին պիտի սկսինք երեսներուն ստորոտը։

(1) Օրէնքը ամէն վաճառականի վրայ պարտք կը դնէ գոնէ տարին մէկ անգամ Ընդհանուր Հաշուեկշիռ մը շինելու եւ զայն արձանագրելու Տետր Հաշուեկշռոց անուամբ մասնաւոր տետրակի մը մէջ։

*Գիտենք արդէն որ Ելից Կշիռ հաշուոյն պարտքը իւր մէջ կ'ամփոփէ բոլոր այն գումարները, որոնք վաճառականին Գոյքը կը կազմեն, եւ Պահանջքը կը ներկայացնէ բոլոր այն գումարները որոցմէ կը բաղկանայ Պարտքը, եւ բաց աստի, ներկայ զուտ Դրամագլուխը, որ Պարտքը կը հաւասարեցնէ Գոյքին։*

*Ուրեմն Ելից Կշիռ հաշիւը ուրիշ բան չէ բայց եթէ ընդհանուր Հաշուեկշիռը, ամփոփ կերպով ներկայացուած, առանց մանրամասնութեան, Կրկնատումարի դրութեան յատուկ մասնաւոր ձեւերու ներքեւ որ ընտանի չեն ամէն մարդու։*

102. *Հիմա, Օրէնքով պահանջուած տետրակին մէջ Հաշուեկշիռը գրելու համար, կը բաւէ ուրեմն Ելից Կշիռ հաշիւը մերկացնել Կրկնատումարի յատուկ ձեւերէն, եւ տալ անոր ուրիշ ձեւ մը, եթէ ոչ աւելի պարզ, գէթ ամենուն համար աւելի հասկնալի, աւելցնելով քանակի, ծանրութեան, տեսակի եւ գնոյ մասին պէտք եղած մանրամասնութիւնները։*

*Ահաւասիկ մեր հաշուեկշիռը.*

# ՀԱՇՈՒԵԿՇԻՌ

## Մ. Խնդիրեանի ի Կ. Պոլիս

### ի 30 սեպտ. 1893

| | | | | |
|---|---|---|---|---|
| **ԳՈՅՔ** | | | | |
| *Ապրանք ի վաճառատան* | | | | |
| 10 տկռ. Էտիրնէի գինի, 210 ղրշէն | 2,100 | | | |
| 3 » Ռոտոսթոյի քացախ, 125ղշէն | 375 | | | |
| 2000 քիլօ շաքար, 100 քիլօն 280 ղրշ. | 5,600 | | | |
| 5 տակառ Տարտանէլի ճերմակ գինի, 162 1/2 ղրշէն . . . . . | 812 | 50 | 8,887 | 50 |
| *Սեղանաւորք* | | | | |
| Գ. Սապօնճեանի քով ունեցած դրամս | | | 81,677 | 40 |
| *Դրամ յարկեղ* | | | | |
| Սնտուկը գտնուած պատրաստ դրամ | | | 84,459 | 20 |
| *Պարտական յաճախորդք* | | | | |
| Ե. Օհանեան յիւսկիւտար. իր պարտքը | | | 1,675 | 50 |
| *Գանձելի տոմսակք ի թղթապանակի* | | | | |
| Տոմսակ իմ/հ Ն. Ոսկանեան ի Գատը-Գիւղ. վճարօր հոկտ. 31 . . | | | | |
| *Կարասիք* | | | 2,250 | |
| Ունեցած կարասեացս արժէքը . . . . | | | 4,000 | |
| Գոյքերուս ընդհանուր արժէքը | | | 132,949 | 60 |
| **ՊԱՐՏՔ** | | | | |
| *Վճարելի տոմսակք ի շրջաբերութեան* | | | | |
| Փոխանակագիր հ/. Պ. Քրիսեանի, վճարօր 15 դեկտ. . . . . . | | | 2,793 | |
| *Հայթայթիչ պահանջատէրք* | | | | |
| Մ. Անանեան. իւր պահանջքը . . . | 275 | | | |
| Պ. Քրիսեան » » . . . | 400 | | | |
| Յ. Միքայէլեան . » . . . | 28,000 | | 28,675 | |
| Պարտքերուս Ընդհ. գումարը | | | 31,468 | |
| Հետեւաբար, զուտ դրամագլուխս | | | 101,481 | 60 |
| | | | 132,949 | 60 |

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

| ԳՈՑՔ | | | ՊԱՐՏՔ | | |
|---|---|---|---|---|---|
| Ընդհ. ապրանք . | 8,887 | 50 | Վճարելի տոմսակք | 2,793 | |
| Գ. Սապօնճեան . | 31,677 | 40 | Մ. Անանեան | 275 | |
| Սնտուկ . . . | 84,459 | 20 | Պ. Քրիսեան | 400 | |
| Ե. Օհանեան. . | 1,675 | 50 | Յ. Միքայէլեան | 28,000 | |
| Գանձելի տոմսակք | 2,250 | | | 31,468 | |
| Կարասիք. . . . | 4,000 | | Զուտ դրամագլուխս . | 101,481 | 60 |
| | 132,949 | 60 | | 132,949 | 60 |

*Ներկայ հաշուեկշռոյն՝ տետրակներուս հետ համաձայն ըլլալը կ'ստորագրեմ։*

1893 *սեպտ.* 30, *Կ. Պոլիս* *Ս. Խնդիրեան*

---

## ՑՈՒՑԱԿ ԱՊՐԱՆԱՑ

103. *Տեսանք թէ (թիւ* 94) *Ընդհանուր Կչիռը պատրաստելու համար, կանխաւ ըլլալիք գործողութիւններէն մին է վաճառատան կամ մթերանոցին մէջ մնացած պատրաստ ապրանաց ցուցակը կազմել։ Մենք, մեր Ընդհանուր Կչիռը պատրաստելու առեն, կազմեցինք այդ ցուցակը, որով յայտնի եղաւ որ մեր վաճառատան մէջ նոյն պահուն* 8887,50 *ղրուշի ապրանք կար պատրաստ (թիւ* 95)*։ Ահաւասիկ այդ ցուցակն եւս.*

| | | | |
|---|---|---|---|
| 10 *տակառ Էտիրնէի գինի* . . . . . . . | 210 | 2,100 | |
| 3 » *Ռոտոսթոյի քացախ* . . . . . | 125 | 375 | |
| 2,000 *քիլօ շաքար,* 100 *քիլօն* | 280 | 5,600 | |
| 5 *տակառ Տարտանէլի ճերմակ գինի* . . | 162 1/2 | 812 | 50 |
| *Վաճառատան մէջ պատրաստ ապրանք* 93 *սեպտ.* 30*ին* . . . . . . . . . . | | 8,887 | 50 |

---

# ԳՈՑՈՒԱԾ ՀԱՇԻՒՆԵՐԸ

## ՎԵՐՍՏԻՆ ԲԱՆԱԼՈՒ ԿԵՐՊԸ

104. *Վերստին բանալու համար այն հաշիւները զորս Ելից Կշռոյ երկու յօդուածներով փակեցինք, պէտք է Օրհաշուոյն մէջ անցունել Մտից Կշռոյ երկու յօդուած՝ նման Ելից Կշռոյ սոյն երկու յօդուածոց, սա միակ տարբերութեամբ որ Մտից Կշռոյ հաշուոյն Պահանջքին կողմը պիտի նշանակուէին այն գումարներն որոնք Ելից Կշռոյն Պարտքին կողմը նշանակուած էին, եւ թէ ընդհակառակը Պարտքին կողմը պիտի նշանակուէին այն գումարներն որոնք Ելից Կըշռոյն Պահանջքին կողմը նշանակուած էին։*

*Այս կերպով, Մտից Կշիռը պէտք է պահանջող ընել Գոյքը կազմող բոլոր հաշիւներէն, ինչպէս են Ընդհանուր Ապրանքը, Սնտուկը, Գանձելի տոմսակները, Կարասիքը, Ջանազան պարտականները. իսկ պարտական ընել Պարտքը կազմող բոլոր հաշուոց, այսինքն Վճարելի տոմսակաց, Ջանազան պահանջատէրաց, Դրամագլխին։*

105. *Մտից Կշռոյ այս երկու յօդուածները բոլորովին ձեւուած են Ելից Կշռոյն երկու յօդուածներուն վրայ, եւ իրենց արդիւնքն ու նպատակն է գործերն իրենց բնական վիճակին մէջ վերահաստատել, այսինքն տարբերութիւնները դնել իրենց պատշաճ տեղերը։*

*Այսպէս, օրինակի համար, վաճառատան մէջ մնացած ապրանաց ընդհանուր արժէքը, զոր Ընդհանուր Ապրանք հաշուոյն Պահանջքին կողմը գրեցինք՝ միմիայն այդ հաշիւը փակելու համար (Թիւ 95), իրենց բնական տեղը պիտի բըռնեն Պարտքին կողմը։ Տես Ընդհ. Ապրանք հաշիւը, երես 58-59։ Նոյնն է նաեւ Սնտուկը գտնուած դրամին եւ Թըղթապանակին մէջ գտնուած գանձելի տոմսակաց համար, որոնք Պահանջքին կողմը գրուած էին, կշռելու համար Սնտուկ եւ Գանձելի Տոմսակի հաշիւները. Սնտուկը գտնուած այս գումարը եւ Թղթապանակը գտնուած այս տոմսակները, Մտից Կշիռ հաշուոյն շնորհիւ, վերստին պիտի բռնեն իրենց*

բնական տեղը որ է Պարտքին կողմը։ Տես Սնտուկ հաշիւը, երես 60-61. եւ Գանձելի Տոմսակի հաշիւը, երես 62-63։

Այսպէս նաեւ, շրջաբերութեան մէջ եղած վճարելի տոմսակները, որոնք Վճարելի Տոմսակի հաշուոյն Պարտքին կողմը գրուեցան՝ մի միայն այս հաշիւը կշռելու կամ փակելու համար, վերստին պիտի երեւան Պահանջքին կողմը, որ բնական տեղն է շրջաբերութեան մէջ գտնուած վճարելի տոմսակաց։

106. Կը հասկցուի ուրեմն որ Ելից Կշիռ եւ Մտից Կշիռ հաշիւները երեւակայուած են, առաջինը՝ գոնէ տարին մի անգամ բոլոր հաշիւները փակելու, եւ երկրորդը՝ նոյն հաշիւները վերստին բանալու եւ նախորդ հաշուոց տարբերութիւններն իրենց տեղերը փոխադրելու համար։

107. Մեր Մայր-Հաշուոյն հաշիւները, զորս Ելից Կշռով փակած էինք, Մտից Կշռով վերստին պիտի բանանք։ Հիմա կազմենք մեր Մտից Կշիռ հաշիւը։

108. Ինչպէս որ Ելից Կշիռ հաշիւը կազմելով (երես 76-77), զայն Օրհաշուոյն մէջ եւս արձանագրեցինք (երես 78)՝ այս տետրակին յատուկ ձեւով, նոյնպէս Մտից Կշիռ հաշիւն ալ Օրհաշուոյն շարունակութեանը մէջ պիտի արձանագրենք. տես օրինակը 86-87 երեսներու մէջ։

Մտից Կշիռը Օրհաշուոյն մէջ անցունելով, պիտի սկսինք դարձեալ ըստ առաջնոյն գումարել Օրհաշուոյն սիւնակները։

109. Միւս կողմանէ, Մտից Կշռոյն համառօտ ձեւը պիտի անցունենք Մայր-Հաշուոյն մէջ ալ, ինչպէս Ելից Կշիռն անցուցինք իր ժամանակին։

ՄՏԻ

ՊԱՐՏԻ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 | | | | |
| Հոկտ. | 1 | Դրամագլխոյն . . . . . . | 101,481 | 60 |
| — | — | Վճարելի տոմսակաց . . . . | 2,793 | |
| — | — | Հայթայթիչներուն . . . . | 28,675 | |
| | | | 132,949 | 60 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| ——— 1893 Յունվ. 1 ——— | | | | |
| ԶԱՆԱԶԱՆՔ՝ ՄՏԻՑ ԿՇՌՈՑՆ. Գոյքս կազմող հետեւեալ տարբերութեանց համար. | | | | |
| Ընդհ. ապրանք. Պատրաստ ապրանք ըստ հաշուեկշռի . . . | 8,887 | 50 | | |
| Սեղանաւորք. Իրենց քով ունեցած դրամը . . . . . | 31,677 | 40 | | |
| Սնտուկ. Պատրաստ դրամը . . | 84,459 | 20 | | |
| Յաճախորդք. Անոնցմէ պահանջքս | 1,675 | 50 | | |
| Գանձելի տոմսակք. Թղթապանակին մէջ մնացած գանձելի տոմսակներս ըստ Հաշուեկշռի . . . | 2,250 | | | |
| Կարասիք. Պատրաստ կարասեաց արժէքը . . . . . . | 4,000 | | 132,949 | 60 |
| ——— 1893 Յունվ. 1 ——— | | | | |
| ՄՏԻՑ ԿՇԻՌ՝ ԶԱՆԱԶԱՆԱՑ. Պարտքս եւ դրամագլուխս կազմող հետեւեալ տարբերութեանց համար. | | | | |
| Վճարելի տոմսակաց. Շրջաբերութեան մէջ գտնուած վճարելի տոմսակաց համար . . . | 2,793 | | | |
| Պարտատէրներուն. Անոնց պարտքս | 28,675 | | | |
| Դրամագլխոյն. Ներկայ դրամագլուխս . . . . . . . . . | 101,481 | 60 | | |
| | | | 132,949 | 60 |

ԿՇԻՌ

ՊԱՀԱՆՋԻ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 | | | | |
| Յունվ. | 1 | Ընդհ. ապրանքէն . . . . . . | 8,887 | 50 |
| — | — | Սեղանաւորներէն . . . . . | 31,677 | 40 |
| — | — | Սնտուկէն . . . . . . . | 84,459 | 20 |
| — | — | Յաճախորդներէն . . . . . | 1,675 | 50 |
| — | — | Գանձելի տոմսակներէն . , . . | 2,250 | |
| — | — | Կարասիներէն . . . . . . | 4,000 | |
| | | | 132,949 | 60 |

ՊԱՐՏԻ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 Հոկտ. | 1 | Զանազանաց . . . . . . . . | 132,949 | 60 |

110. *Ինչպէս երեւցաւ, գոցուած հաշիւները վերստին բանալու համար ալ պէտք է երկու յօդուած գրել Օրհաշուոյն մէջ եւ փոխադրել զայնս ի Մայր-Հաշիւ։*

*Մտից Կշիռ հաշիւն ալ, աւելորդ է ըսել թէ, Ելից Կշիռ հաշուոյն պէս ինքնին կը գոցուի, Պարտքին եւ Պահանջքին կողմը միեւնոյն ընդհանուր գումարները նշանակուած ըլլալով։*

---

## ՎԱՃԱՌԱԿԱՆԻ ՄԸ ՏԵՏՐԱԿՆԵՐԸ

## ԿՐԿՆԱՏՈՒՄԱՐԻ ՎԵՐԱԾԵԼՈՒ ԿԵՐՊԸ

111. *Երբ Կրկնատումարի դրութեան վերածել պէտք ըլլայ տումարներն վաճառականի մը որ մինչեւ այն ատեն Պարզատումարի ձեւով կամ բոլորովին առանց որ եւ է մեթոտի բռնած է իր տումարները, նախ պէտք է չինել այդ վաճառականին գոյքը եւ պարտքը կազմող իրերուն ցուցակը եւ Հաշուեկշիռ պատրաստել, մեր պատրաստած Հաշուեկշռոյն պէս (երես 81), եւ յետոյ զանոնք Օրհաշուոյն մէջ անցունել՝ գոյքը կազմող իրերը Դրամագլխոյն պարտական ընելով, եւ պարտքը կազմող իրերն ալ Դրամագլխէն պահանջող ընելով։*

*Դրամագլուխ հաշիւը կը ծառայէ ուրեմն սկսելու վաճառականի մը տետրակները։*

*Ուրեմն, մեր Օրհաշիւը պիտի սկսինք այսպէս.*

ՊԱՀԱՆՋԷ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 Հոկտ. | 1 | Զանազաններէ . . . . . . . | 132,949 | 20 |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1893 Հոկտ. 1 | | | | |
| ԶԱՆԱԶԱՆՔ՝ ԴՐԱՄԱԳԼԽՈՑՆ. | | | | |
| Սնտուկ . . . . . . . . | 84,459 | 20 | | |
| Ընդհ. ապրանք . . . . | 8,887 | 50 | | |
| Մեղանաւորք . . . . . . | 31,677 | 40 | | |
| Յաճախորդք . . . . . . | 1,675 | 50 | | |
| Գանձելի տոմսակք . . . | 2,250 | | | |
| Կարասիք . . . . . . . | 4,000 | | 132,949 | 60 |
| 1893 Հոկտ. 1 | | | | |
| ԴՐԱՄԱԳԼՈՒԽ՝ ԶԱՆԱԶԱՆԱՑ. | | | | |
| Վճարելի տոմսակաց . . . | 2,793 | | | |
| Հայթայթիչներուն . . . . | 28,675 | | 31,468 | |

*Օրհաշուէն ի Մայր հաշիւ փոխադրելը գիտենք արդէն։*

112. *Այսպէս ուրեմն, երբ կը ձեռնարկենք կարգի դնել վաճառականի մը տետրակները, ամենէն առաջ պէտք է սկսիլ վաճառականին ընդհանուր վիճակը պատկերացնող երկու յօդուածով. ինչպէս նաեւ վեցամսեայ շրջանը կամ առեւտրական տարին լրացած ժամանակ, տետրակները փակել՝ դարձեալ վաճառականին վիճակը ներկայացնող երկու նման յօդուածներով։*



# ԼՐԱՑՈՒՑԻՉ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

113. *Խօսեցանք բոլոր այն ընդհանուր ծանօթութեանց վրայ զորս գիտնալն անհրաժեշտ է՝ վաճառատան մը կամ գործատան մը տետրակները բռնելու համար. խօսեցանք միայն այն Հաշուոց եւ Տետրակաց վրայ որոնք նոյնն են ամէն վաճառատանց եւ ամէն գործատանց համար։ Իսկ զանց ըրինք յիշել, ուսանողին միտքը չը շփոթեցնելու համար, բոլոր այն գործողութիւնները որոցմով կ'զբաղին խիստ փոքրաթիւ վաճառականք միայն։*

*Եւ սակայն մեր աւանդած Տոմարակալութիւնը կատարեալ է, եւ ամէն ոք պիտի կրնայ հիմա՝ առանց դժուարութեան՝ բանալ եւ բռնել Հաշիւներ եւ Տետրակներ նաեւ բաց ի անոնցմէ, որոցմով զբաղեցանք։*

*Իբրեւ յաւելուած, մի քանի ծանօթութիւններ կ'ուզենք տալ հոս այն հազուադէպ գործողութեանց մասին որոցմով չզբաղեցանք դեռ, եւ պիտի վերջացնենք՝ ցոյց տալով ընթերցողին թէ ի՛նչպէս ուղղել պէտք է այն սխալներն որոնք կրնան սպրդած ըլլալ տետրակաց մէջ։*

---

### Յանձնառուողչէքով ձգուած ապրանքներու հաշիւ

114. *Երբ ուրիշ վաճառականի մը կամ թղթակցի մը ապրանք տանք յանձնառուողչէքով* (en consignation) *ծախելու համար, հաշիւ մը կը բանանք զոր կ'անուանենք Ապրանք յանձնառուողչէքով (այսինչ)ին քով։ Այսպիսի հաշիւները պարտական պէտք է ընել ապրանաց բուն արժէքին եւ եղած ծախքերուն համար, եւ պահանջող՝ վաճառման արդիւնքին համար։ Այս կարգի հաշիւները կը գոցուին Վնաս եւ Շահ հաշուով։*

115. *Երբ, ընդհակառակը, թղթակցէ մը ապրանք կ'ստանանք՝ յանձնառուողչէքով վաճառելու համար, հաշիւ մը կը բանանք զոր կ'անուանենք Ապրանք յանձնառուողչէքով (այսինչ)ին։ Այս հաշիւը Պարտական կ'ընենք փոխադրութեան եւ*

*մաքսի ծախուց եւ վաճառման յանձնառուղչէքին համար, եւ Պահանջող՝ վաճառման արդիւնքին համար: Այս հաշիւը կը փակենք Թղթակցին հաշուոյն պահանջքով, կամ Թէ ըսենք, հաշիւը փակելու համար խրեն կողմանէ մեզ ղրկուած հաշուոյն պահանջքով:*

..........................

## Մասնակցութեան հաշիւներ, կամ ½ ի, ⅓ ի, ¼ ի մասնակցութեամբ ապրանաց հաշիւներ

116. *Կը պատահի երբեմն որ վաճառական մը՝ իր սովորական գործերէն զատ՝ ուրիշ վաճառականի մը կամ վաճառականներու հետ ընկերութիւն մը կը կազմէ, շահակցութեամբ որոշեալ գործողութիւն մ'ընելու եւ շահ կամ վնասը կանխաւ որոշուած համեմատութեամբ բաժնելու համար:*

*Կրնան չորս պարագայ ներկայանալ:*

1º *Վաճառականը յանձն կ'առնու ապրանքներու գնումն ու վաճառումը:*

2º *Ցանձն կ'առնէ գնել միայն, եւ իր շահակիցը կամ շահակիցներէն մին յանձն կ'առնու վաճառումը:*

3º *Շահակիցը կ'ստանձնէ գնումը, եւ ինքը կ'ստանձնէ վաճառումը:*

4º *Շահակիցը կ'ստանձնէ գնումը եւ վաճառումը:*

*Այս կարգի գործողութիւն մ'սկսուած ժամանակ, վաճառականը հաշիւ մը կը բանայ զոր կ'անուանէ* Ապրանք ½ ի, ⅓ ի, ¼ ի հաշուով (այսինչ)ին հետ, *գործին շահուն մէջ իր մասնակցութեան որոշեալ սահմանին համեմատ:*

ԱՌԱՋԻՆ *պարագային մէջ, այս հաշիւը*

*Պիտի Պարտքի ապրանքին արժէքը եւ ծախքերը՝ որք կը կազմեն հայթայթող կամ վճարող հաշուոյն Պահանջքը*

*Պիտի Պահանջք շահակցին կամ շահակիցներուն բաժինը՝ որք պիտի կազմեն անոր կամ անոնց հաշուոյն Պարտքը.*

*Պիտի Պահանջք վաճառման զուտ արդիւնքը՝ որք պիտի անցնին ընդունող հաշուոյն Պարտքին մէջ.*

*Պիտի Պարտքի շահակցին կամ շահակիցներուն մասը՝ որ պիտի անցնի անոր կամ անոնց հաշուոյն Պահանջքին կողմը:*

Հաշիւը պիտի փակուի Վնաս եւ Շահով։

ԵՐԿՐՈՐԴ պարագային մէջ, այս հաշիւը

Պիտի Պարզի ապրանքին արժէքը եւ ծախքերը՝ որք պիտի անցնին հայթայթող կամ վճարող հաշուոյն Պահանջքին մէջ.

Պիտի Պահանջէ շահակցին բաժինը՝ որ պիտի անցնի անոր հաշուոյն Պարտքին մէջ.

Պիտի Պահանջէ վաճառման զուտ արդիւնքէն վաճառականին սեպհական բաժինը՝ որ պիտի անցնի ծախող շահակցին հաշուոյն Պարտքին կողմը, կամ այս վերջնոյն ի վճարումն ղրկած իրը։

Հաշիւը պիտի փակուի Վնաս եւ Շահով։

ԵՐՐՈՐԴ պարագային մէջ, այս հաշիւը

Պիտի պարզի ապրանքին գնոյն եւ ծախքերուն մէջ իւր բաժինը՝ որ պիտի անցնի գնող շահակցին հաշուոյն Պահանջքին կողմը, կամ ի վճարումն անոր ղրկուած իրը.

Պիտի պահանջէ վաճառման զուտ արդիւնքը՝ որ պիտի անցնի ընդունող հաշուոյն Պարտքին մէջ.

Պիտի պարզի շահակցին բաժինը՝ որ պիտի անցնի անոր հաշուոյն Պահանջքին մէջ։

Հաշիւը պիտի փակուի Վնաս եւ Շահով։

Եւ կամ, վաճառումէն յետոյ, այս հաշիւը եւ շահակցին հաշիւը պիտի պահանջեն՝ իւրաքանչիւրը զուտ արդիւնքէն իւր բաժինը։

ՉՈՐՐՈՐԴ պարագային մէջ, այս հաշիւը

Պիտի պարզի ապրանքին գնոյն եւ ծախուց մէջ իւր բաժինը՝ որ պիտի անցնի գնող շահակցին հաշուոյն Պահանջքին մէջ, կամ ի վճարումն անոր տրուած իրը.

Պիտի Պահանջէ վաճառման զուտ արդիւնքէն իւր բաժինը՝ որ պիտի անցնի ծախող շահակցին հաշուոյն Պարտքին կողմը, կամ ի վճարումն անկէ ընդունուած իրը։

Հաշիւը պիտի փակուի Վնաս եւ Շահով։

## Հաշիւ արժէթղթոց

117. *Եթէ վաճառականը, գործի սկսած ժամանակ, Տէրութեան հասութաբեր թուղթեր, Ընկերութեանց բաժնեթղթեր, Երկաթուղւոյ պարտատոմսեր եւ ուրիշ արժեթղթեր ունենայ, պարտի այս արժեթղթոց համար հաշիւ մը բանալ, եւ այս հաշուոյն պարտքին կողմը դնել անոնց օրուան արժէքներուն գումարը, Դրամագլուխ հաշուոյն ալ Պահանջքին կողմը դնելով նոյն գումարը։*

*Եթէ որ եւ է արժեթուղթ մը գնէ, արժեթղթոց հաշուոյն պարտքին կողմը պիտի դնէ գնուած արժեթղթին գինը եւ ծախքերը, եւ պահանջքին կողմը պիտի դնէ վաճառման զուտ արդիւնքը։*

*Երբ վճարումը մաս առ մաս տեղի ունենայ, հետզհետէ հաշուոյն պարտքին կողմը պիտի դնէ մասնակի վճարումները։*

*Իբրեւ տոկոս եւ շահաբաժին ընդունուած գումարները պիտի անցնեն հաշուոյն Պահանջքին կողմը։*

*Հաշուեկշռոյ պատրաստութեան ժամանակ, թղթապանակին մէջ մնացած արժեթղթոց օրուան արժէքը կ'որոշեն, եւ զայն կ'անցունեն հաշուոյն Պահանջքին կողմը։*

*Հաշիւը կը փակեն Վնաս եւ Շահով։*

..........................

## Ստորաբաժանմունք մասնաւոր հաշուոց

118. *Երբ վաճառական մը թղթակցի մը հետ իրարմէ բոլորովին տարբեր զանազան գործեր ունի, կրնայ անոր համար բանալ այնչափ մասնաւոր հաշիւ որչափ տեսակ որ գործ ունի անոր հետ, հետեւեալ տարբեր անուններով օրինակի համար.*

*Այն ինչը. իւր դրամական հաշիւը.*

*Այն ինչը. իւր ապրանաց հաշիւը.*

*Այն ինչը. իւր յանձնարարողքի հաշիւը, եւայլն։*

*Այսպիսի առանձին հաշիւներ պէտք է բանալ այն ժամանակ՝ երբ օգտակար կը համարուի դրամական գործողու-*

թիւններն չըշփոթելու ապրանքին վրայ եղած գործողու-թեանց հետ։

Երբ յարաբերութեան մէջ ենք շատ անձերու հետ որոց համար չենք ուզեր առանձին հաշիւներ բանալ Մայր-Հաշուոյն մէջ, կրնանք զանոնք ամէնքը ամփոփել Զանազան պարտականք կամ Զանազան պահանջողք կամ Զանազան պարտականք եւ պահանջողք անուամբ միակ հաշուոյ մը մէջ։

Այսպիսի հաշիւներ պարտական եւ պահանջող կ'ըլլան այնպէս, ինչպէս պիտի ըլլար իւրաքանչիւրին մասնաւոր հաշիւը։

---

## Հաշիւ մեր պարոն այսինչին

119. Եթէ առեւտրական ընկերութիւն մ'է որ կը գործէ, ընդհանուր՝ հաշիւները կը ներկայացնեն ընկերութիւնը հաւաքաբար. այն ատեն իւրաքանչիւր ընկերակցի համար մասնաւոր հաշիւ մը կը բացուի՝ Մեր այսինչ պարոնը անուամբ։

Այս Մեր այսինչ պարոնը հաշիւը պարագայից եւ պիտոյից համեմատ կրնայ մասնաւոր հաշիւներու ստորաբաժանուիլ, հետեւեալ անուններով.

Մեր այսինչ պարոնը. իւր դրամագլխոյ հաշիւը.

Մեր այսինչ պարոնը. իւր տոկոսաւոր դրամին հաշիւը։

Մեր այսինչ պարոնը. իւր ընթացիկ հաշիւը.

Մեր այսինչ պարոնը. իւր ճամբորդութեան հաշիւը, եւլն։

---

## Հետեւութիւն

120. Նախընթաց բացատրութիւններէն կը հետեւի,

Թէ՝ Կրկնատումարի դրութիւնը կատարելապէս կարող է, իւր հաշուոց ստորաբաժանմամբ, պատկերացնել գործառնութիւններն իրենց ամէն մանրամասնութիւններով, բան մը որ անհրաժեշտ է ընդարձակ վաճառականութեան մը մէջ. այս կերպով՝ այս դրութիւնը կարող կ'ըլլայ կեդրոնացնել, ամփոփել եւ ի մի բովանդակել ամենայետին մանրամաս-

նութիւնները, այն հաշուոց շնորհիւ որոնք սահմանեալ են մի միայն անոնց արդիւնքները ներկայացնելու։

Թէ՝ այս դրութիւնը կրնայ ի հարկին սահմանափակուիլ հինգ Ընդհանուր հաշուոց (Ընդհ. ապրանք, Սնտուկ, Գանձելի տոմսակք, Վճարելի տոմսակք, Վնաս եւ Շահ) եւ Դրամագլուխի ու Կշիռի հաշուոց գործածութեանը մէջ. վասն զի բոլոր միւս հաշիւները, որոց անուններն անհուն կերպով կը փոփոխին, վաճառականութեան տեսակներուն եւ իրենց անթիւ մասնաւորութեանց համեմատ, իրապէս ուրիշ բան չեն այլ սոյն հինգ սկզբնական հաշուոց ստորաբաժանումները, եւ պէտք է բանուին բացարձակապէս միեւնոյն կերպով եւ միեւնոյն սկզբունքին համաձայն, որ անփոփոխելի է։

121. Աւելորդ չեմք համարիր դիտել տալու թէ, պէտք է զգուշանալ սակայն անօգուտ կերպով հաշիւներու թիւն աւելցնելէ եւ երկդիմի անուններով յորջորջելէ զանոնք, վասն զի այդ կարգի հաշիւներ ընդհանուր դրութեան վրայ մթութիւն մը կը տարածեն, ուրկէ կարելի է խոյս տալ՝ մի միայն պահելով, ընդհակառակն, քիչ թուով եւ որոշ անուններով ընդհանուր հաշիւներ, որոնք կը պահպանեն այս հանճարեղ դրութեան նախնական յատկութիւնը եւ պարզութիւնը։

## ՍԽԱԼՆԵՐ ՈՒՂՂԵԼՈՒ ԿԵՐՊԸ

122. Կրնայ պատահիլ որ խնդիրներն Օրհաշուոյն մէջ արձանագրելու ժամանակ սխալներ սպրդին, ինչպէս եւ խնդիրները Օրհաշուէն ի Մայր-Հաշիւ փոխադրելու ժամանակ։

Նախ տեսնենք թէ ի՛նչ սխալներ կրնան սպրդել Օրհաշուոյն մէջ եւ ի՛նչպէս ուղղելու է զանոնք։

123. ՕՐՀԱՇՈՒՈՅՆ մէջ կրնան հետեւեալ սխալները պատահիլ.

1° Գումար մը կրնանք սխալ գրած ըլլալ կամ յաւելում մը կրնանք սխալ ըրած ըլլալ։

2° Կրնանք հաշիւ մը ուրիշ հաշուոյ մը տեղ պարտական կամ պահանջող գրած ըլլալ։

3° Կրնանք հաշիւ մը պարտական գրած ըլլալ՝ փոխանակ պահանջող ընելու, կամ պահանջող գրած ըլլալ՝ երբ պէտք էր պարտական ընել։

4° Կրնանք մոռցած ըլլալ Օրհաշուոյն մէջ անցունելու ամբողջ յօդուած մը։

5° Յօդուած մը կրնանք երկու անգամ Օրհաշուոյն մէջ անցուցած ըլլալ։

Օրհաշուոյն մէջ որ եւ է քերթուածք եւ լուսանցքին մէջ փոխադրութիւն օրէնքով արգիլուած ըլլալով, սխալ պարունակող յօդուածոց մէջ որ եւ է փոփոխութիւն չենք կարող ընել. ուստի այդ սխալներն ուղղելու համար մասնաւոր միջոցներ ի գործ պիտի դնենք։

Ա. պարագայ.—Եթէ գրուած գումարն իրական գումարէն նուազ է, պէտք է նոր յօդուած մ'ալ գրենք որուն մէջ միեւնոյն հաշիւները պարտական եւ պահանջող կ'ըլլան տարբերութեանը համար։

Եթէ, ընդհակառակը, գրուած գումարը իրական գումարէն աւելի է, պէտք է՝ նոր յօդուածով մը՝ տարբերութիւնն անցունել պահանջող հաշուոյն պարտքին մէջ եւ պարտական հաշուոյն պահանջքին մէջ։

Բ. պարագայ.—Երբ հաշիւ մը ուրիշ հաշուոյ մը տեղ պարտական գրած եմք, այս վերջինը պարտական պիտի ընենք եւ յանիրաւի պարտական եղած հաշիւն ալ պահանջող կ'ընենք։

Եւ եթէ հաշիւ մը ուրիշ հաշուոյ մը տեղ պահանջող գրած եմք, նոյն հաշիւը պարտական պիտի ընենք, եւ իրապէս պահանջող հաշիւն ալ՝ պահանջող։

Գ. պարագայ.—Ենթադրենք թէ կանխիկ 1000 ղրշի ապրանք ծախեցինք։ Սետուկը, որ ընդունողն է, պարտի Ընդհանուր ապրանք հաշուոյն՝ որ տուողն է։ Եւ սակայն սխալմամբ սա յօդուածն անցուցած եմք.

Ընդհ. ապրանք՝ Սնտուկին.

Կանխիկ ծախեցի . . . . . . . 1000

Այս սխալն ուղղելու համար, նախ սապէս յօդուած մը պիտի գրենք.

Սնտուկը՝ Ընդհ. ապրանքին.

Ոչնչացնելու համար այն ինչ օրուան յօդուածը որ սխալ է . . . . . 1000

Եւ երկրորդ յօդուած մը՝

Սնտուկը՝ Ընդհ. ապրանքին.

Այն ինչ օրուան կանխիկ վաճառումը . . 1000

Դ. պարագայ.—Երբ Օրհաշուոյն մէջ ամբողջ յօդուած մը մոռցած ենք անցունել ժամանակին, Օրհաշուոյն շարունակութեանը մէջ պարզապէս անցունելու է նոյն յօդուածը, յիշելով ժամանակին մոռցուած ըլլալը։

Ե. պարագայ.—Երբ յօդուած մը երկու անգամ գրուած է Օրհաշուոյն մէջ, հակառակ յօդուած մ'աւելցնելու է՝ յիշելով որ այն ինչ յօդուածն երկու անգամ գրուած ըլլալով, մին ջնջելու համար է այս նոր յօդուածը։

Օրինակի համար, երբ Ընդհ. ապրանքը սխալմամբ երկու անգամ 1000 ղրուշ պարտական ըրած ենք Պօղոսին, այս սխալն ուղղելու համար՝ մէկ անգամ ալ Պօղոսը Ընդհ. ապրանքին պարտական պիտի ընենք, որպէս զի Ընդհ. ապրանքը միայն մէկ անգամ 1000 ղրուշ պարտական եղած ըլլայ Պօղոսին։

123. ՄԱՅՐ ՀԱՇՈՒՈՅՆ մէջ կրնան հետեւեալ սխալները պատահիլ՝ Օրհաշուէն յօդուածոց փոխադրութեան ժամանակ.

1° Գումարի մը տեղ ուրիշ գումար մը կ'անցնի։

2° Հաշուոյ մը վերաբերեալ գումար մը կ'անցնի ուրիշ հաշուոյ մը մէջ։

3° Հաշիւ մը, որ Օրհաշուոյն մէջ պահանջող է, պարտական կ'ըլլայ, եւ փոխադարձաբար։

4° Ամբողջ յօդուած մը ի Մայր-Հաշիւ փոխադրել կը մոռցուի։

## ՅՈՎՆԱՆ Գ. ՓԱԼԱԳԱՇԵԱՆ

ԿՐԹԱԿԱՆ ՏԵՍՈՒՉ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԱՑ Կ. ՊՈԼՍՈՅ

# ՆՈՐ ԴԱՍԸՆԹԱՑՔ ԹՈՒԱԳԻՏՈՒԹԵԱՆ

**ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԴՐՈՒԹԵԱՄԲ**

*Համաձայն Ազգ. Կեդր. Վարչութեան Ուսումն. Խորհրդոյ Ծրագրոյն*

**ՏԱՐՐԱԿԱՆ**

**Ա. Տարի.** 1—100 թուոց մշակութիւն. 800 է աւելի գործնական պարզ խնդիրներով եւ հրահանգներով ճոխացած . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . Ղրշ. 4

**Բ. Տարի.** 1—1000 թուոց մշակութիւն. 600է աւելի գործնական պարզ խնդիրներով եւ հրահանգներով. Ղրշ. 4

**ՄԻՋԻՆ**

**Գ. Տարի.** 1—10000 ամբողջական թուոց արտասանութիւնը, գրութիւնը եւ չորս գործողութիւնը. — Ընդհանուր գաղափար կոտորակաց վրայ. — Գործածական չափուց, կշռոց, դրամոց եւ ժամանակի բաժանմունք. — Մտաւոր վարժութիւնք. — 500 է աւելի հրահանգներ եւ գործնական պարզ խնդիրներ . . . . . Ղրշ. 4

**Դ. Տարի.** Թուարկութիւն եւ չորս գործողութիւնք ամբողջ թուոց. տասնորդական կոտորակաց եւ խառն թուոց. — Վարժութիւնք եւ խնդիրք՝ պատճառաբանութեամբ. — Մտաւոր հաշիւ . . . . . . . . Ղրշ. 4

**ԲԱՐՁՐԱԳՈՅՆ**

**Ե. Տարի.** Տասնորդական եւ Հասարակ կոտորակք. Յատկութիւնք թուոց. Թուրքիոյ հին եւ նոր չափուց եւ կշռոց բաղդատութիւնը. 500 ի վեր հրահանգք եւ գործնական խնդիրք. աղիւսակք, եւայլն: . . . . Ղրշ. 6

**Զ. Տարի** Գործածութիւն թուաբանական գործողութեանց. Կշռութիւն եւ համեմատութիւն. Կանոնք Երից, Շահու, Զեղչման եւ Միջին պայմանաժամու. Միջնորդչէք. Հարիւրին այսչափ շահ եւ զեղ. Ընկերութեան կանոն կա՞մ Համեմատական բաժանումն. Սնանկացելոյ մը ստացուածոց բաժանումն. Միջին ճաշխ. Խառնուրդ. Մետաղաց բաղադրութիւն. Քառակուսի եւ խորանարդ արմատք. Մետրական դրութիւն, եւայլն, եւայլն: Բաց ի բազմաթիւ հրահանգներէ՝ 300 ի վեր գործնական խնդիրներ . . . . . . . . . Ղրշ. 6

ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԵԱՆ Արուեստ եւ Վաճառականական գիտելիք. Պարզ Տումար եւ Կրկնատումար . . Ղրշ. 6